Gousson 2944

# ԱԲՈՒՍԱՀԼ ՀԱՅ

## ՊԱՏՄՈՒԹԻՒՆ

### ԵԿԵՂԵՑԵԱՑ ԵՒ ՎԱՆՈՐԷԻՑ ԵԳԻՊՏՈՍԻ

الشيخ ابى صلح الارمنى



ՎԵՆԵՏԻԿ - Ի ՍՈՒՐԲ ՂԱԶԱՐ

1895

2944

# ԱԲՈՒՍԱՀԼ ՀԱՅ

## ՊԱՏՄՈՒԹԻՒՆ

### ԵԿԵՂԵՑԵԱՑ ԵՒ ՎԱՆՈՐԷԻՑ ԵԳԻՊՏՈՍԻ

### الشيخ ابى صلح الارمنى



## Ա.

*ԺԷ դարուն կիսէն վերջ Սաքս-կոթայ դուքսն՝ իր ազգակից և կրօնակից (լութերական) եթովպագէտ Յհ. Միքայէլ Վանսլէբ* (Wansleb *կամ* Vansleb, *ծն. յԷրֆուրդ,* 1635 + 1679), *երիտասարդը խաւրեց յԱփրիկէ, Ղփտեաց և Եթովպացւոց կրօնից վրայ տեղեկութիւն և արեւելեան հին ձեռագիրներ ստանալու. զոր և ըրաւ սա, բայց չկըրցաւ գոհացընել զդուքսը։ Ինքն ալ տժգոհ՝ գնաց ի Հռովմ, կաթուղիկեայ դաւանանքն ընդունեցաւ, և մտաւ ի կրօն Դոմինիկեանց. յետոյ գնաց ի Պարիս, ուր ԺԴ Լուդովիկոսի բանաւէր պաշտօնեայն Քոլ-*

պերտ՝ Նորէն ղրկեց զնա յԵգիպտոս, ա֊
րեւելեան ձեռագիրներ ժողովելու. որ և յա֊
ջողեցաւ 330էն աւելի արաբերէն, Թուրքա֊
րէն և պարսկերէն գրքեր հաւաքել և բերել։
Ասոնց Թուէն էր և արաբերէն պատմութիւն
մի Աբու Սալիհ Հայ անուանելոյն։ Ձեռա֊
գիրն բաւական հին է, 1338ին գրուած. հե֊
ղինակն յայտնապէս հնագոյն, ԺԳ դարուն
սկիզբները վախճանած։ Գրքին առաջին 20
Թուղթերն կորած ըլլալով՝ անոր բուն վեր֊
նագիրն կամ անունն այլ չկայ. բայց ետեւի
գրուածներէն՝ (որ բովանդակեն 113 Թուղթ),
յայտնուի՝ որ պատմութեան նիւթն է՝ մեր
վերը նշանակածը։ — Արաբագէտ և արե֊
ւելաքրքիր բանասէրք, ինչպէս Գատրըմէր
այս դարուս, և մանաւանդ Րենոդոյ (Re-
naudot) ԺԸ դարու սկիզբում, շատ բան
քաղեցին այս պատմըչէս, արեւելեան՝ և յատ֊
կապէս Աղեքսանդրիոյ եկեղեցւոյ կամ պատ֊
րիարքաց վրայօք։ Ասոնց Թարգմանած կտոր֊
ներէն մենք այլ առենօք օգտուելով՝ ազգային
տեղեկութիւններ տուած էինք (ի Ներս.
Շնորհալի և Պարագայ իւր. երես 162–70)։
Աբուսահլ՝ ասոնցմէ աւելի Հայոց վրայօք
գրած կարծուի ի բանասիրաց. որովհետեւ
հիմայ Հայոց վրայ պատմելով կու սկսի գիրքն,

ուսկից հետեւցընեն թէ կորսուած առաջին մասն այլ առաւելապէս մերայոց վրայօք էր։

Երկու դարէ աւելի շատ օտարաց այլ մեզ այլ ցանկալի՝ բայց գրեթէ անմատչելի եղած այս պատմագիրքս, (թէ արաբերէն լեզուով և թէ դժուարընթերց գրչութեամբ ըլլալուն), վերջապէս այս տարուանս սկըզբում՝ Փռանկաց ուսմանց պաշտօնէի շնորհիւ առ Անգլիացի գիտնականս, ի լոյս ընծայեցաւ, թէ բնագիր լեզուաւն և թէ անգլիարէն թարգմանութեամբ, Էւէտտս անուամբ (B. T. Evetts M. A) գիտնականի համալսարանին Օքսֆըրտի, ուր և տպագրեալ է, ճոխ ծանօթութեամբք, որ գրեթէ հեղինակին գրածէն աւելի են. և զորս շատ մասամբ տուած է գիտնագոյն մի, Բըտլէր Ալփրէտ (Butler), հեղինակ հետաքննելի գրքի մի՝ Եգիպտական հին եկեղեցեաց վրայօք, (The ancient Coptic Churches of Egypt). Ձեռնտու եղած է մասամբ և բազմահմուտ հայագէտ, և քանի մի տարիէ վեր ծանօթ մեր ազգային բանասիրաց և ասոնց օրագրաց մէջ Կոնեբիբէր (F. Fr. Conybeare), որ և զուարթառատ ազնըւութեամբ ընծայեց մեզ օրինակ մի Արուսահլի թանկ և հետաքրքրական գրոց. որոյ համար կարեւոր պարտք համարիմք հրապարակել հօս մեր շնորհակալութիւնը։

Գալով առ հեղինակն, զոր ըստ մեր մատենագրաց և ազգային սովորութեան՝ Աբուսահլ անուանեմք (փոխանակ Սալիհ ըսելու), ո՛վ և որոյ որդի և երբ յԵգիպտոս եկած ըլլալն՝ չի յիշուիր. որովհետև, ըստ վերոյգրելոցս, գրքին սկիզբն պակաս ըլլալով՝ իր վրայօք ըսածն այլ (եթէ ըսած էր) պակսի. բայց իր պատմութեան մէջ շատ հեղ զինքն և իր ժամանակակիցները յիշելէն՝ յայտնուի, որ 1170էն մինչև 1208 տարին ներկայ է եղեր ոմանց իր պատմած դիպաց և անձանց։ Բայց աւելի ստոյգ ըսելով, ոչ միայն իր գրածին սկիզբն պակսած է, այլ կերպով մի և բոլոր գրուածն այլայլեալ, բայց ոչ խանգարեալ։ Վասն զի, ձեռագրին ընդօրինակողն՝ այսպէս կ՚աւարտէ. «Հօս վերջանայ
» պատմութեանս հեղինակին գործն, զոր՝
» անկարելի էր իրեն ամբողջացընել, երկրիս
» երեսաց ընդարձակութեանն համար՝ ընդ
» արևելս և ընդ արևմուտս. սակայն այն-
» չափ նիւթ հաւաքած է՝ որչափ ոչ ոք իմէ-
» զատ, և մեծ խնամքով ըրած է գործը.
» միանգամայն և համառօտ է ի բացատրու-
» թեան, վասն զի աւելորդ համարած է ճո-
» խաբանել ի պատմութեան։ Իսկ խեղճ,
» թշուառ և տկար գերիս՝ ընդօրինակողս,

» ինչ որ գտայ՝ զայն օրինակեցի, առանց ա-
» ւելցընելու կամ պակսեցընելու, (բայց վերջը
» կ՚ըսէ թէ համառօտեր է), առաջնորդու-
» թեամբ Շէյխ Ար-Բայիս ալ-Աքրամ Ա-
» պուլֆարաճի, որդւոյ Շէյխ Ռափայէլի,
» որդւոյ Ապուլ Ֆարաջի քահանայի Սան-
» դուք ալ-իլմ (Գիտութեանց սնտուկ) ա-
» նուանելոյ, որ Մսրայ Աշ-շամ դղեկի ե-
» կեղեցւոյ քահանայից աւագերէցն էր։...
» Ընդօրինակութիւն գրոցս աւարտեցաւ չո-
» րեք շաբթի օր Բառնա ամսոյ երկուքին,
» անբիծ Մարտիրոսաց 1054 թուականին,
» որ է 738», (Հիճրէդի, և 1338 թուին

Քրիստոսի)։ — Այս վկայութեամբ այլ հաստատուի որ գիրքը պահողքն, ընդօրինակողն և հեղինակն այլ քրիստոնեայ էին, գուցէ և ամենքն այլ քահանայ. Աբուսահլ եւս Շէյխ կոչուի։ Յետոյ խոստովանի ընդօրինակողն որ կարեւոր բան մի դուրս չէ թողած ի հեղինակէն.

Աբուսահլի պատմածներն շատ ճիշդ և ստոյգ են, նա և ժամանակագրական և տեղագրական մասամբք, միայն թէ շատ տեղ ոճով կարգ մի չունի գիրքն. ետեւ առաջ գրէ պատմելիքը. վանքի կամ եկեղեցւոյ մի վրայ գրելէն՝ կ՚անցնի Եգիպտոսի եկամըտից կամ

Նեղոս գետոյն ստորագրութեան, կամ Նշա-
նաւոր անձի մի վարուց. շատ հեղ այլ կրկնէ
առաջուան ըսածը, կամ մէկ մասն առաջ պատ-
մէ, միւսը շատ ետեւ: Այլ ինչ և է, շատ հե-
տաքննական և հարուստ գիտելիք ունի՝
Ղփտեաց ճգնաւորաց, վանորէից, եկեղե-
ցեաց, պատրիարքաց, նա եւ մասամբ Նու-
բիոյ և Եթովպիոյ վրայ, ուր և թուի անձամբ
գնացած և տեսած. աւելի առաջ այլ անցնե-
լով՝ Ափրիկէի հիւսիսային կողմանց և Արա-
բիոյ, և ինչուան ի Հնդկաստան կ'ակնարկէ.
Երբեմն եւս քաղաքական դիպուածոց վրայօք,
որոց ներկայ եղած է, ինչպէս Սալահէտտինի
Եգիպտոսի տիրելուն և աւրածներուն. երկայն
գրուած մ'այլ Մարկոս Ալ-Քանպար անուամբ
ղփտի քահանայի և կրօնաւորի վրայ, որ իբ-
րեւ քաղկեդոնական՝ հաճոյ չէ իրեն, և այ-
լանդակ մոլորութիւններ այլ ընծայէ անոր:

Աբուսահլ հնագոյն տեղեկութիւններն ա-
ռած է իրմէ առաջ գրողներէն, որոց մէջ ա-
մենէն անուանի և գտնելը փափագելին է՝
Աբուլ-Հասան Շաբուշթի անուամբ մէկն (*Ash-
Shabushti*, شابشتی, Ժ դարու վերջ կամ ի
սկիզբն ԺԱ ին մեռած. որ գրեր է վանորէից
անուամբ գիրք մի (Քիթապ ադ-Տիարաթ):
Շատ բան այլ առած է Թ դարու հեղինակ

Սեւերոս եպիսկոպոսի գրած Աղեքսանդրիոյ կամ Յակոբկաց պատրիարքաց պատմութենէն, ուսկից նոր հեղինակք այլ շատ օգտուած են, բայց ամբողջ գործն դեռ չէ թարգմանուած յեւրոպական լեզուս: Ուրիշ աղբիւր մ'այլ է Եւտիքիոս անուանեալ՝ բայց բնիկ անուամբ Սայիտ իպն էլ–Պատրիկ պատրիարքն Մելքիդաց, + յամի 940: Այսոր գրածն թարգմանուած է լատիներէն և տպագրուած յՕքսֆըրտ, յամի 1654–6: Դարձեալ նոյնպէս եկեղեցական պատմիչ մի՝ Մահպուպ, Յակոբիկ եպիսկոպոս Մըմբեճացի:

Աբուսահլ ի պատմութեան՝ Մարտիրոսաց կոչուած թուականը գործածէ, որ կու սկսի Դիոկղետիանոսի հալածանաց հրովարտակէն, ի 29 օգոստոսի 284 փրկչական տարւոյ. երբեմն այլ հիճրէդի թուականը յիշէ. Հմուտ է մահմէտական օրինաց և պատմութեանց, և ոչ շատ խորշող. երկար գրելով և իբր բուն նպատակ՝ Ղփտեաց եկեղեցիքն և վանօրայքը՝ աւելի յարեալ կ'երեւի այս ազգի, իբր համակրօն, և անոնց մէջ ծնած և սնած. թէ և հաւանօրէն՝ քանի մի դարէ ի վեր յԵգիպտոս գաղթած Հայոց սերունդ է. թուի թէ և մեր նոր գաղթականաց նման՝ բնիկ հայրենի լեզուին անգէտ կամ ոչ շատգէտ, արաբերէն

գրեր է, իբրև գիտնական լեզուաւ, որոյ հըմտութիւնն անտարակոյս է, նա և շատ պատմիչներ յիշելէն։ Բաց ի սկզբան բաւական երկար Հայոց վրայօք գրածէն, այլ եւ այլ տեղ այլ յիշէ զնոյն Հայ պաշտօնեայս և Վգրուկս. և ուր որ Հայոց եկեղեցի և վանք կայ (զորս մենք այլ Թարգմանօրէն պիտի յիշեմք), բայց ամենեւին իր հայազգի ըլլալը կամ ազգասիրութիւն՝ չի ցուցըներ. և ընդհանրապէս ոչ միայն անկողմնասէր, այլ և ցուրտ կ'երեւի, թէ և հաւատարիմ ի պատմութեան։

Այս մեր յառաջաբանս մասամբ առած եմք Թարգմանչին եօթ կամ ութ թուղթ յառաջաբանութենէն, (որուն հաւատարմութեանը կամ արաբագիտութեան չափին չեմք կրնար երաշխաւոր ըլլալ). մասամբ ամբողջ Արուսահլի գրոց Թարգմանութիւնը կարդալով. ուսկից և պիտի քաղեմք այն կտորները միայն՝ որ վերաբերին Հայոց, և Թարգմանութեան ներքեւ կ'աւելցընեմք երբեմն Թարգմանչին և իր օգնականաց տուած ծանօթութիւնները, երբեմն մեր կողմանէ ինչ որ հարկաւոր համարիմք. Յիշեմք և զայս, որ Թարգմանիչն խընամով երեք չորս ցանկ շինած և դրած է ի վերջ Թարգմանութեանն, յատուկ անուանց

տեղեաց և անձանց, և ընդհանուր անուանց, որ փափագելի էր մեզ աւելի ճոխ ըլլալ. ասոնցմէ զատ և առաջին ցանկ մ'այլ ըրած՝ և համրած է եգիպտական եկեղեցեաց, թուով 707, և վանորէից՝ 181. բայց ասոնց վրայ կըրնար քանի մ'այլ աւելցընել[1]: Յիշեմք դարձեալ, որ յետ պատմագրութեան Աբուսահլի՝ կայ Յաւելուած՝ թարգմանուած Ալ-Մաքրիզի պատմչէն (+1441) գրած Եգիպտոսի քրիստոնէից եկեղեցեաց, 72 տեղեաց, և 86 վանորէից համառօտ ստորագրութիւն[2].

Յետ զասոնք յիշելու՝ չեմք կըրնար չյիշել խոր զգացմամբ՝ մեր նախնեաց յիշած և յանուանէ նշանակած եօթանասունէն աւելի Հայոց վանքերը յԵրուսաղէմ և ի մերձաւոր տեղիս, զատ յեգիպտականաց, Լուսաւորչի օրերէն մինչեւ ի վերջ Ձ դարու՝ շինուած, բնակուած, նորոգուած և աւրուած: Միթէ

1. Նուբիոյ մէջ այլ 400 եկեղեցիք կային, կ'ըսէ Աբուսահլ. ԺԶ դարու ճամբորդ մի՝ տեսողի վկայութեամբ գրած է, թէ 150 եկեղեցի կային դեռ վայելուչք բայց աւերակք:

2. Միանգամայն թարգմանութիւն գրոց Աբուսահլի ծանօթութեամբք, Յաւելուածով, ցանկերով և յառաջաբանութեամբ 400էն քիչ մ'այլ աւելի երես է, քառածալ թերթերով. արաբերէն բնագիրն այլ 142 երես:

զուտ ազգային հեղինակ մ՚այլ՝ Աբուսահլի և Շաբուշթի նման չէ՞ր գրած չափաւորապէս (և աւելի քան զԱնաստաս վարդապետ մեր յ՚Է դարու[1]) ասոնց պատմութիւնը. կամ պիտի ըՍա՞յ մէկ մի՝ որ հետաքննէ անոնց անհետա֊ ցեալ տեղուանքը, և յերեւան հանէ անակն֊ կալ և ոչ խպառ անյուսալի նշխարքը, ար֊ ձանագրերն, և այլ ի՞նչ գիտեմ։

Բ.

Ցառաջաբանի մէջ յիշուեցաւ այս պատ֊ մութեան ձեռագրին սկզբան պակասութիւնը. հիմակուան եղածին առաջին երեսն այլ քիչ մի մաշած և դժուար կարդալի է. ասկէց թուի սխալ թուական կամ քանի մի բառ պակաս, որով չփոթի ըստծն. որ է այսպէս.

« Սկսինք օգնութեամբ և առաջնորդու֊
» թեամբ Աստուծոյ։ Մեր ժամանակիս, այս֊
» ինքն ի սկըզբան 564 տարւոյ (հիճր. որ է
» հոկտ. 1168–1169 սեպտ. թուին Քրիս֊
» տոսի), եղաւ վերաշինութիւն Ս. Ցակոփ

1. Բաղմավէպ, հատ. Խ. էջ 23։

» կոչուած եկեղեցւոյն , (Հայոց) որ Եգիպ-
» տոսի Այգեստան կոչուած վիճակին մէջն է,
» բլրոց մօտ » :

Բնագիրն՝ Ալ-Պասատին البساتين յոգնակի գրէ՝ ուրիշ տեղ Ալ-Պոստան բառը, որ է այգի, պարտէզ, պահէզ, և Գահիրէ մայրաքաղաքէն քանի մի մղոն միայն հեռու է՝ յարեւելեան հարաւային կողմն : Տեղն ստոյգ, ըսած Թուականն կամ վերաշինութիւնն սըխալ. վասն զի ի յիշեալ Թուականին՝ վանքն ոչ թէ շինուեցաւ՝ այլ աւրուեցաւ կամ ամայացաւ, ինչպէս քիչ մի վերջը պիտի ըսէ ինքն պատմիչն. ապա Թուի թէ այս տեղ աւրուիլը յիշելով մէկ բառի՝ առաջին շինութիւնն այլ ուզեր էր յիշել, և երկու դիպուածն յիրար խառնուեր է :

« Այս եղաւ.... Էմիրին ատեն, որ կա-
» ռավարէր զԵգիպտոս, շնորհիւ սուլտանին.
» և բարեկամ էր ամէն քրիստոնէից, թէ
» մեծամեծաց թէ ռամկաց :

Անուն էմիրին պակսի ի ձեռագրին, բայց յետոյ յիշածէն յայտնուի, որ Մուստանզիր խալիֆէի՝ Հայազգի վզրուկն էր, Պատր ալ-Ճամալի կոչուած, և շատ անգամ Էմիր ալ-Ճիյուշ امير الجيوش بدر, այսինքն՝ զօրա-

պետ. յիշուի նա և ուրիշ պատուոյ անուամբք: Սա իբր դար մի յառաջ քան զվերոյիշեալ Թուականն, այսինքն ԺԱ դարու վերջին քառորդին, Հայոց նոր գաղթական բերելով բազմացուց յԵգիպտոս զՀամազգիս՝ իբրեւ 30,000 տուն. գոնէ 10,000, ինչպէս գրէ Ն. Շնորհալւոյ հմուտ կենսագիրն. ասոնց յատուկ եպիսկոպոս այլ ձեռնադրեց մեծ կաթողիկոսն Գրիգոր Վկայասէր, անձամբ գալով յԵգիպտոս, ինչպէս պիտի վկայէ և մեր պատմիչն: Պատրի ինչ ցեղէ ըլլալն յայտնի չէ, միայն կ'ըսուի թէ, Ասորւոց երկրէն եկած էր կամ բերուած իբր գերի.

«Ինքն (էմիրն) ամսական տասն դենար
» (ոսկի դահեկան) կ'առնուր վարձ երկրի (վա-
» նացն Հայոց), որ իր կալուածն էր: Ձեռք
» զարկաւ և յառաջ տարաւ զվերաշինութիւն
» Ս. Յակոբայ սրբարանին (արաբ. اسكينا
» ասքինա, ի յոյն ἀσκηνη բառէ). բարձր գըմ-
» բեթով՝ որ շատ հեռուէն կ'երեւէր, կամա-
» րօք և կամարակապօք. և աւարտեց բոլորը,
» նորէն հաստատելով մեծամեծ դռները. ա-
» սոնք ատեն մի վերցուեցան, բայց ինքն նո-
» րէն նորոգեց. դարձեալ վերուցին այդ դըռ-
» ները, ինքն այլ դարձեալ հաստատեց».

Հաւանօրէն՝ քրիստոնէից և մանաւանդ Հայոց՝ այն առենի և տեղւոյ յառաջադիմութեան նախանձոտք և հակառակողք կ՚ընէին զայս:

Այս դիպուածոց մանրամասնութենէն աւելի՝ փափագելի էր մեզ գիտնալ, թէ ե՞րբ առաջին անգամ շինուեր կամ հիմնուեր էր՝ այդ Երուսաղեմի զուգորդ Հայոց եպիսկոպոսն Ս. Յակոբն. որովհետեւ պատմիչն՝ վերաշինութիւն կամ նորոգութիւն կոչէ Էմիրին ըրածը. որոյ գործակից եղած է և Գրիգոր մեծ Վկայասէրն. ինչպէս վկայէ և պատմիչն Վարդան, թէ երբ եկաւ «ի Մսր, և մեծարեցաւ յոյժ ի սուլտանէն, և շինեաց » վանս Հայոց, և ձեռնադրեաց զեղբօրորդի » իւր Գրիգորէս՝ եպիսկոպոս». սա ըստ այլոց և ստուգիւ՝ քեռորդի իւր էր: Վկայասիրի առաջին անգամ յԵգիպտոս գալուն թուականն հաստատօրէն համարուի 1076. թէ և ըստ Վարդանայ թերեւս աւելի կանուխ. զի հազիւ տարի մի նստած յաթոռն (1065-6) «գնաց, կ՚ըսէ, ի Կ. պոլիս, ի թարգմանու- » թիւն. և առեալ զգրեանն՝ կամեցաւ գնալ » յԵրուսաղէմ. և նաւին առեալ զնա (վա- » րելով հողմոյն) տանի ի Մսր»: Վանաց շինութեանն անտարակոյս ձեռնտու եղած է Պատր, որոյ արդէն յամի 1074 վզրուկ ըլ-

լան յիշուի: Սա բաց այդ մեծ Ս. Յակովբ եկեղեցիէն,

«Աւարտեց գնորդութիւն (ուրիշ մօտիկ)
» եկեղեցւոյ մի, բայց օծել չտուաւ, և ոչ պաշ-
» տօն կատարել հօն: Երբ վախճանեցաւ ինքն՝
» թաղուեցաւ այս եկեղեցւոյ մէջ: Հիմայ այս
» վանացս չորս կողմն են պարտէզք, բանջա-
» րանոցք և արտօրայք ցորենոյ. գրօսանքի
» տեղեաց ամենէն նշանաւորներէն մէկն
» է: — Երբոր Ղուզք (ցեղակիցք Թուրքաց)
» և Քուրդք տիրեցին Եգիպտոսի երկրին
» հիճր. 564 (1168–9 Փրկչին), ամենուն ծա-
» նօթ տագնապք եկան այն ատեն յԵգիպ-
» տոս բնակող Հայոց վրայ. իրենց պատ-
» րիարքն և կրօնաւորք՝ մեր յիշեալ վանքէն
» վռնտուեցան, գոներն պատեցան գոցուե-
» ցան, և ոչ ոք համարձակէր մօտենալու ա-
» մայացեալ եկեղեցիներուն ».

Եգիպտոսի տիրողն էր հռչակաւոր Սալահէտտինն՝ Հալպայ և Դամասկոսի Նուրէտտին սուլտանին հրամանաւ. և գի ազգաւ Քուրդ էր նա, Արուսահլ անոր զօրքերն այլ Քուրդ կոչէ, որոց զինակից էին և Ղուզք կամ Ղօզք: Իսկ Թուականն՝ որ ստոյգ է և նոյն իր պատմութեան սկզբան յիշածին հետ, յայտնէ մեր վերը ըսած շփոթութիւնը՝ ե-

եկեղեցւոյ շինութեանն և ամայութեան։

Այս ատենի Հայոց եպիսկոպոսին՝ զոր նա պատրիարք կոչէ, յայտնի չէ անունն. անկէ առաջ մեզ ծանօթ եպիսկոպոսն է Անանիա, 30 տարի մ'առաջ վախճանած։

« Այգեստանն ի կալուած տրուեցաւ Ֆաքի
» ալ-Պաշա Ալի անուն դամասկացւոյ (գիտ-
» նական անձ մի). սա Հայոց համար շնորհեց
» Յովհ. Մկրտչի եկեղեցին, որ շինուած էր
» ամբիծ Տիրամօր եկեղեցւոյն վրայ, ի Հա-
» րա-Զուիլա (թաղի). հօն բնակեցաւ պատ-
» րիարքն՝ նոյն տարին (1168-9 »։

Յիշեալ թաղն՝ որ հիմայ Զուվայիլա կ'ըսուի, կոչուած է յանուն Բարբարոս (Պէրպէր) ցեղի կամ գնդի, որ շիներ էր զայն, Գահիրէ մայրաքաղաքի շինութեան ատեն, իբր յամի 969. ինչուան հիմայ կայ այն տեղ յայտնի հնութեան նշաններով եկեղեցի մի յանուն Ս. Կուսին (Ալ-Ատհրա), և հաւանօրէն նոյն պատմչին յիշածն է։ Իսկ վրայէ վրայ շինուած եկեղեցիք շատ յիշուին և կան յԵգիպտոս։

Որչափ այլ Հայք Եգիպտոսի տէրութեան փոփոխութեան ատեն վնասուեցան և քշուեցան, բոլորովին այլ անգործ և ապշած չեն կեցած. Ֆուստատայ (Հին Գահիրէի) մէջ Տի-

րամօր նուիրեալ եկեղեցի մի կար, շատ յաճախեալ ի բարեպաշտից. այդ քաղաքական շփոթից առեն՝ եգիպտական զօրաց մէկ բաժինն՝ Ճիւյիւշիէ կոչուած՝ որ Խափշիկ էր ազգաւ և հակառակ միւս (Ռայհանիէ) բաժնին, կողոպտեց այս եկեղեցին, և ինչուան ճամբաներու վրայ այլ աւազակութիւն և մարդասպանութիւն կ'ընէր, ինչպէս պատմէ Աբուսահլ, և աւելցընէ.

«Երբ Ղուզք և Քուրդք տիրեցին Եգիպ-
»տոսի (1169ին), գունդ մի քրիստոնեայ
»Հայոց՝ վրայ հասան այս Սեւերուն, և շա-
»տերը սպաննելով մնացեալները վըռնտե-
»ցին. և անոնց բնակած թաղն որ մօտ էր
»Ալ-Համրայ (թաղի) անբնակ մնալով՝ Հա-
»տալպա Ղուզի մականուանեալ Գահիրէի
»վալին գնեց, և մշակութեան երկիր դար-
»ձուց տեղը», և այլն:

Յատուկ Հայոց զօրագունդ մ'ըլլալն ի բանակի խալիֆայից Եգիպտոսի, յիշեն ուրիշ պատմիչք այլ, նա և իրենց բնակութեան թաղը, Հիւսէյնիէ կոչուած:

## Գ.

« Հայոց Պատրիարքն. — Այս պատ-
» րիարքս նախ եպիսկոպոս էր Իթֆիսի (որ
» հիմայ Աթֆիհ, طفليس կոչուի, և փոքր քաղաք
» մ՚է ի հարաւակողմն Գահիրէի, իբր 2800
» բնակչօք). յետոյ Ալ-Հաֆիզի խալիֆայու-
» թեան ատեն՝ (1130-49) մտածեց պատ-
» րիարք ըլլալ, կաշառք տալով։ Դաշինք դը-
» րաւ ամիրապետին հետ, անոր պատմական
» գիտութիւններ հաղորդելու. և սա՝ հաճե-
» լով՝ թոյլ տալու անոր՝ որ շաբաթն երկու
» անգամ՝ երկուշաբթի և հինգշաբթի, գայ ի
» պալատ, էմիրներու և պաշտօնէից հետ,
» նա և տօնական օրեր, զինքը բարևելու,
» և նոր գտած տեղեկութիւնները տալու։
» Այս կերպով երբ պատրիարքն այցելութեան
» գար ի Զմրխտեայ պալատն, կու հաղորդէր
» ինչ որ գտերէր ի կենսագրութիւնս, ի պատ-
» մութիւնս պատերազմաց, ի ժամանակա-
» գրութիւնս և ի տարէգիրս առաջին տիրա-
» պետաց. և այս կերպով գրուցակից կ՚ըլլար

» Ալ–Հաֆիզի հետ, ինչուան ասոր մահը, որ
» հանդիպեցաւ երկրորդ Ճումահա ամսոյն 544
» տարւոյ » (հիճր. որ է Փրկչին 1149)։

Ցիշեալ Զմրըխտեայ պալատն (Գասր ալ–զիւմրիւտ, قصر الزمرد) ֆաթիմեան խալիֆայից արքունական մեծ ապարանից մասն էր, յարեւելեան կողմ Գահիրէի, քաղքին Զմրուխտ կոչուած դըրան անուամբ։ Ցիշելի է այս տեղ որ նոյն տարիները (1135–7) խալիֆային վզրուկն էր Պահլաւունին Վահրամ, որ յետոյ պիտի յիշուի։

« Վերոյիշեալ վանքէն դուրս՝ բայց ոչ հեռի,
» բրտարանէն (հողէ ամաններու գործարան)
» զատ փոքր եկեղեցի մի կար, Ալ–ամիր պի–
» Ահքամի՛լլահ խալիֆային ատեն շինուած
» (որ է Նախորդ Հաֆըզի), ի պէտս Մելքի–
» տաց, փոխանակ Հարա Զաւիլայի մէջ ե–
» ղած եկեղեցւոյն, որ և աւրուած էր անոր
» ատեն, և Հաֆըզի ատեն ի մզկիթ փո–
» խուեցաւ։.. Կամարներու վրայ շինուած էր
» եկեղեցին. ներքեւն այլ մեռելոց համար
» գերեզմանատուն մի կար ։ Երբ Ղօզք և
» Քուրդք Հայոց վրայ հարուած բերին, պատ–
» րիարքնին Թողուց զԵգիպտոս և ելաւ գնաց
» յԵրուսաղէմ. հետը տանելով 75 Սուրբ

» Գիրք, որոց մէջ կար և օրինակ մի չորից
» Աւետարանաց պէսպէս գոյներով և ոսկւով՝
» պայծառազարդ պատկերօք հրաշագործու-
» թեանց Քրիստոսի, որ փառաւորեալ ըլլայ» :

Բանասիրաց ցանկալի և անակնկալ մարմաջ մ'է այս ձեռագրաց յիշատակն, ոչ այնքան թուովն՝ որքան անոնց ընտիր և պատուական ըլլալովն, մանաւանդ այն ընտրելագոյն Աւետարանն, որ թուի թէ և հնագոյն էր։ Այսպէս կարծելով և Թարգմանիչ գրոցս համարի թէ յոյն կամ ասորի ճարտարաց գործ ըլլան զարդերն. վասն զի, կ'ըսէ, ԺԳ դարէն առաջ Հայոց մէջ այսպիսի մանրանկար չկար։ Սակայն ԺԲ դարու վերջերն այլ ի Հայոց ոսկեզարդ և գունագոյն նկարեալ Աւետարանք գտուին հիմայ. (օրինակ մի ըլլայ Սիսուանի երես 84 պատկերն, Ս. Ներսիսի Լամբրոնեցւոյ Աւետարանին)։ Թարգմանիչն յիշէ Էջմիածնի 989 թուին (Քրիստոսի) գրուածը, որոյ պատկերք յիրաւի հնագոյն ասորի նկարք են. յիշէ նա և մեր Ս. Ղազարու վանաց աւետարան մի՝ բիւզանդական մանրանկարօք՝ ի վերջ Ժ դարու. ստուգիւ չունիմք մենք այդպիսի մի որոշ թուականաւ, բայց հատ մի՝ ոչ շատ մանր և ոչ այլ խոշոր արուեստով՝ բայց նշանաւոր պատկերօք և քիչ ոսկւով, որ

ըստ ոմանց ԺԱ դարու գործ է, և ըստ այլոց՝ հնագոյն։ Մնայ մեր Երուսաղէմի հաշակաւոր Ս. Յակոբայ միաբանից՝ քննել թէ արդեօք դեռ գտնուի՞ իրենց գրատան կամ գանձատան մէջ Արուսահլի յիշած Աւետարանն, որոյ ինքն ականատես եղած և հանած գուշակուի. և մեզ հաւանական թուի թէ Գր. Վկայասէր բերած էր զայն. վասն զի յիշուած է ի պատմչաց մերոց հետը ձեռագիրներ բերելն և թողուլն յԵգիպտոս։

« Պատրիարքին ճամբորդութիւնն սկսաւ
» շաբաթ օր Հատուր ամսոյ 15ին (Նոյեմբ).
» Մարտիրոսաց 888 թուին (1172 Քրիստոսի),
» որ համեմատի հիճր. 568 տարւոյ Ռապի
» էվվէլ ամսոյ 23ին։ Կ'ըսուի, թէ Երուսա-
» ղեմէն դուրս վանք մի շինեց, եկեղեցի մ'այլ
» յանուն Ս. Սարգսի, سركيس, որ է նոյն Ա-
» պու Սիրճա ابو سرجه կոչուածն. և այս ե-
» կեղեցւոյս փոխադրեց բոլոր սեղանոյ սպաս-
» քըն և ոսկի դահեկանքն. կ'ըսուի այլ թէ
» 20 միանձունք կային այս վանաց մէջ »։

Կարծեմ այն Ս. Սարգիս եկեղեցին հիմայ անյայտ է, և յիշուած չէ մեր Երուսաղեմի Ս. տեղեաց ստորագրողներէն։

«Պատրիարքն իրեն փոխանորդ քահանայ
» մի թողուց ի Գահիրէ, անոր որդւոյն հետ,
» որ ժամասացութիւն և պատարագ կատա-
» րեն ըստ պատշաճ ժամանակի, Յովհ. Մկըր-
» տիչի եկեղեցւոյն մէջ, որ ի Հարա Զաւիլա՝
» անարատ Տիրամօր մատրան (եկեղեցւոյ)
» վրայ շինուած է, ինչպէս առաջ ըսինք.
» այս եկեղեցւոյ մէջ ժողովէին ընկերութիւն
» մի Հայոց՝ արանց և կանանց: Իսկ ասոնց
» ունեցած վանքն եկեղեցիներով մէկտեղ՝ ա-
» մայի թողուեցան, և դռներն այլ փակուե-
» ցան: — Երբ լուր եղաւ որ պատրիարքն
» յԵրուսաղէմ եկաւ հասաւ անվտանգ, բո-
» լոր քրիստոնեայք ընդ առաջ գնացին իրեն
» ուրախութեամբ և խնդութեամբ, հանդերձ
» սաղմոսերգութեամբ, և առջևնէն խաչեր և
» վառած ջահեր տանելով և բուրվառներով
» խնկելով. — Ասկէ վերջը պատրիարքն
» հանգիստ ապրեցաւ քիչ մ'ատեն, և ապա
» հանգեաւ ի շնորհս Աստուծոյ, որ գովեալ
» ըլլայ. Տօբի ամսոյ հինգին (որ համեմատի
» դեկտ. 27—յանու. 25), ի նոյն վերոյիշեալ
» տարին, և թաղուեցաւ ի վանս Ս. Յակով-
» բայ Զեբեդեան յԵրուսաղէմ. — Սա ազ-
» նուաբարոյ անձ մի էր, գեղեցիկ տեսքով,
» փայլելուչ հասակաւ. երեսքն մօրուօք և մը-

» ռուղզք պատած, որ ալեւորած էին, և տա-
» րւօքն այլ իբրեւ ութսունամեայ էր »:

Այս նկարագիրս անտարակոյս յայտնէ որ Արուսահլ անձամբ տեսեր և ճանչցեր է իր պատրիարք կոչածը. ափսոս, որ անունը չէ գրած, կամ թէ կամաւ լռած է, ինչպէս և անոր ժամանակակից և ազգակից Երուսաղէմի եպիսկոպոսին անունը, որոց վրայ ըսուած պժգալի գրպարտութիւններ յիշէ, վըկայելով այլ որ նախանձոտաց չարախօսութիւն ըլլան և անստոյգ.

« Կ'ըսուի, թէ յԵրուսաղէմ նստող Հայ ե-
» պիսկոպոսն՝ տեսնելով որ ամենքն կ'երթան
» տեսնուելու այս սուրբ պատրիարքին հետ,
» իր ազնուական բարուց համար, նախան-
» ձելով վրան՝ թոյն խմցուց, և մահը պատ-
» ճառեց: Բայց Աստուած յաջողութիւն չտուաւ
» այդ եպիսկոպոսին՝ պատրիարքին մեռնելէն
» վերջը, և ոչ երջանիկ կեանք. վասն զի
» քանի օրէն ետեւ ինքն այլ մեռաւ: Աս-
» տուած իր ծածուկ իմաստութեամբ գիտէ
» թէ որչափ ստոյգ էր այդ եպիսկոպոսին
» համար ըսուածն: Իսկ պատրիարքն՝ որոյ
» համար էր խօսքերնիս, գիտուն քահանայ
» մ'էր, լաւ տեղեակ Ս. Գրոց և զանոնք

» յաջող բացատրող: Բայց կային Նախանձոտք
» իր բարի համբաւոյն տարածմանն համար,
» և կ'ըսէին թէ յանցաւոր եղած էր ոչ բա֊
» րոյական վարքով: Այս գրոյցս հանեցին ի֊
» րեն անմեղութեան ամենէն աւելի նախան֊
» ձոտքն: Գրոցս հեղինակն (ինքն Արուսահլ)
» վկայէ, թէ հանդիպեցաւ Ասկալոնացի Ա֊
» պու'լ Գասիմ Խալիլ փիլիսոփայ բժշկի, որ
» կ'ըսէր, թէ տեսեր էր զպատրիարքը' Աղ֊
» Ջուհրի վանքում եղած ատեն, իր խըցկան
» մէջ (և անարատ գտեր է): Այս գրոյցս իր
» յԱտրիս (Եգիպտոսէ յԵրուսաղէմ) երթա֊
» լէն և իր մահուանէն վերջը տարածուե֊
» ցաւ: Մորայ զատիներուն գլխաւորին (որ
» էր Ալ-Ազզ Հասան իպն Սալամա՝ Պախի֊
» լանի մականուանելոյ) տանը մէջ ես այս
» գրոց խեղճ հեղինակս՝ հանդիպեցայ (վե֊
» րոյիշեալ) Ապու'լ Գասիմի, Շավվալ ամսոյ
» 27ին, յամին 568 ». (հիճր. իսկ Քրիստոսի
1173):

Այնքան այլանդակ են գրոյցքն, որ և ոչ թարգմանել արժան համարուած են. և գրեթէ նախանձու կիրքն՝ ինք զինքը յայտնէ, փոխանակ ուրիշներու ըրածին: Հրէշ պիտի ըլլար եպիսկոպոսն՝ որ 80ամեայ ծեր պատրիարքի մի թոյն տայ, որոյ համբաւն, գիտութիւն,

կրօնասիրութիւնն՝ իրեն իսկական ջատագով են։ Բայց Աստուծոյ գիտութեան թողլով Աբուսահլի հետ՝ եթէ դատելու բարոյական բան մ՚այլ կար, պատմականը կըրնանք խընդրել, այլ գուցէ և չգտնել. այսինքն, այդ եպիսկոպոսին ո՞վ ըլլալը և անունը։ Յառաջ քան Երուսաղեմի պատրիարքներն, այսինքն ԺԴ դարէն յառաջ եղած եպիսկոպոսաց կարգն և անուանքն՝ շատ ստոյգ չեն, թէ և մօտ ատեններս՝ Ս. Յակոբայ հռչակաւոր աթոռոյն յաջորդներուն վրայ գրողք՝ շարակարգ մի հրատարակած են. ըստ որոց՝ վերոյիշեալ դիպաց տարին, 1172–3, Սահակ էր եպիսկոպոսն, այն որ Հռոմկլայի ազգային եկեղեցական մեծ ժողովոյն մէջ կու ստորագրէ, «Սահակ արքեպիսկոպոս աստուածա»կոխ քաղաքին Երուսաղեմի». և կ՚ըսեն, թէ սա աթոռակալեր է 1152 թուականէն մինչև ի 1180։ Բայց ժողովոց պատմութիւնն և ժամանակակից Աբուսահլի պատմածն՝ անտարակոյս կ՚ընէ, որ այս Սահակս չէր այն տարուան (1173) եղած և մեռած եպիսկոպոսն. անկէց առաջ՝ Նոր գաւազանագիրք կու դնեն Եսայի եպիսկոպոս, յամի 1152, եղբայր իր նախորդ Ներսեսի, որ աթոռակալած ըլլայ յամի 1109. ուրեմն երկու եղբարք մինչա-

մայն 45 տարի, որ չատ հաւանական չերևնար։ Ինչպէս այլ ըլլայ այս, հարկ է որ Եսայեայ և Սահակայ միջև, 1152–1171, ուրիշ եպիսկոպոս այլ եղած ըլլայ, և ինքն կամ իրեն անծանօթ յաջորդ մի ըլլայ Նախանձաբեկ մեռնողն ի 1171։ — Տեղական խնդրին, այսինքն Խալիլ Գասիմ բժշկին եկած և պատրիարքին բնակած Ագ-Ջուհրի վանքն՝ զոր անմիջապէս այս դիպուածէն վերջը յատկապէս պիտի ստորագրէ Աբուսահլ, ծանօթ և անուանի էր. ըստ Թարգմանչացն՝ ընդ մէջ Գահիրէի և Ֆուստատայ, ուր նախայիշեալ այգեստանն կամ ընդարձակ պարտէզներն կային, իրենց առջի ստացողին անուամբ կոչուած, որ էր Աբդ ալ-Վահապ իպն Մուսա Ագ-Ջուհրի։

## Դ.

« Հայոց՝ Այգեստանի եւ Զուհրեայ մէջ
» եղած Եկեղեցեաց՝ յետոյ ի՞նչ ըլլալն։ —
» Երբ և ոչ մէկ գլխաւոր Հայու մի Թողու-
» ցին Մնալ յԵգիպտոս, Ղփտիք ստացան
» այս ընդարձակ և հին եկեղեցին, մեր տի-

» բոջ սուլտանի վճռով, և միջնորդութեամբ
» Շէյխ ար–Ռայիս Սաֆի ատ–տաւլա իպն
» ապու՝ Մաալի դպրի (կամ գրագրի), որ և
» իպն Շարաֆի կոչուէր։ Յետոյ Հայոց (համ-
» բարապետն կամ պաշտպանն) Վահրամ
» Սայիտ ատ–տաւլա سعيد الدولة بهرام
» նորոգեց այս իրաց յարմարութիւնը »։

Յիշեալ սուլտանն՝ կամ Նուրէտտինն է կամ Սալահէտտին։ Վահրամդ այդ իշխանաւոր՝ չէր այն Շնորհալւոյ հօրեղբօր որդի և եղբայր Գրիգորի եպիսկոպոսի մեծիշխան Վահրամն, որ յետոյ պիտի յիշուի ի պատմըչէս, և որ այս պատմածին Թուականէն 40 կամ 50 տարի առաջ պայծառանար յեգիպտոս. բայց գուցէ անոնց ցեղէն ըլլայ. իսկ ասոր գործն կամ պաշտօն՝ զոր Աբուսահլ زمام Հայոց կոչէ, և անգլ. Թարգմանիչն steward of the Armenians գրէ, կարծեմ փակագծելոցս մէկը նշանակէ, և որ և է կերպով գործակալ մի էր Հայոց։ Իր ըրած գործն այլ (որ քիչ մի մութ է) գրելէն ետև, պատմիչն յիշէ եկեղեցւոյն նորոգութիւնն Իպն–Շարաֆի ձեռօք և Աղեքսանդրիոյ պատրիարքէն օծուիլը, և անոր աթոռանիստ ըլլալը, ուր տեղ Հարաթ–ար–Ռում (հռովմէաբնակ) Թաղի Ս. Աստուածածնի եկեղեցիէն քահանայք

գային պաշտօնը կատարելու․ յիշէ և եկեղեցւոյն պատկերաց նկարողները, որոց ամենուն գործն աւարտեր է յամին 1177։

« Այս ատեններս եկաւ ի Հայոց եպիսկո-
» պոս մի, հետն այլ երեք քահանայ, Հայոց
» Թագաւորէն և պատրիարքէն ղրկուած.
» երկուքէն այլ մէկ մէկ պատգամ, և երկու
» այլ Թուղթ բերելով․ որոց մէկը գրած էր
» Մէլիք Սալահատտին, միւսը՝ անոր եղ-
» բայրն Մէլիք Սայֆատտին Ապուպէքր,
» առ Մէլիք Թաքիատտին․ որք պատուիրէին
» այսոր՝ իրենց Թղթերովը, պատուով ընդ-
» ունիլ զեպիսկոպոսը․ և Հայոց երկու ե-
» կեղեցիները՝ որ յԱյգեստանն և ի Զուհ-
» րի՝ դարձընել տալ անոնց։ Եպիսկոպոսն
» իջաւ յեկեղեցի Ս․ Յովհաննու Մկրտչի՝
» որ ի Հարա – Զաւիլա․ բայց Ֆաքիհ ատ-
» Թուսի չհաւանեցաւ այս բանիս․ եպիսկո-
» պոսն այլ հակառակելով անոր դէմ՝ ամիս-
» ներով կեցաւ հօն, մինչև հիւանդանալով
» մեռաւ, առանց իր նպատակին հասնելու․
» Թաղուեցաւ Հայոց Զուհրի եկեղեցւոյն
» մէջ․ Աստուած ողորմի հոգւոյն »։

Ֆաքիհ՝ դամասկացի մ'էր, Այգեստանին կալուածատէր։ Մեզի նշանակելին է այդ ան-

ծանօթ մնացած դիպուածն, եպիսկոպոսի մի պատգամաւորութեան, ի քաղաքական և եկեղեցական գլխոց Հայոց։ Յետինն յայտ է ի ժամանակէն՝ որ էր ճարտար և փառաւոր կաթողիկոսն Գրիգոր Տղայ. առաջինը՝ Թարգմանիչն կարծէ թէ մեր մեծագործ Ա. Լեւոնն ըլլայ. այլ չէ. հապա իր եղբայրն է Պարոնաց Պարոնն Ռուբէն, որ վախով զիջած էր առ Սալահատտին, առ որ և Գր. Տղայոյ գրած մէկ մտերմական թուղթն յիշուի, թէ և ստուգութիւնն երկբայական է. իսկ Լեւոն ինչպէս վարուեցաւ Սալահատտինի հետ, ծանօթ է մեզ (ի Միխուան), որոյ պատմական մասին փռանկերէն թարգմանութեան՝ խաւրէ անգլիացի թարգմանիչն՝ զընթերցողը. (բայց ոչ համաձայն հայ հեղինակին)։ Սալահատտինի և Սայֆատտինի թուղթերն ընդունողն Թաքիատտին՝ էր եղբօրն որդին, փոխարքայ դրուած յԵգիպտոս՝ յամի 1183, ուսկի կանչուեցաւ յԱսորիս յամի 1186. ուրեմն այս երկու թուականաց միջոց եղաւ Հայոց եպիսկոպոսին գալն, որով և մեր Ռուբենի իշխանապետութեան ատեն, մինչ Լեւոն ոչ թէ միայն չէր թագաւորած՝ այլ և ոչ պայազատած։

Այս դիպուածէն քիչ վերջը, պատմէ Աբուստհլ՝ Ղփտեաց գողութեան կասկած ու-

նենալն՝ եկեղեցեաց պաշտպան մոլիմանաց վրայ, և զանոնք ծեծելը. ասոնց այլ բողոքելն առ Ֆաքիհ, որ փակել կու տայ զեկեղեցիս. յետոյ սուլտանն հրովարտակաւ շնորհէ բանալ և պաշտօն կատարել: Բայց Ֆաքիհի մեռնելէն ետև՝ Նոր կալուածատէրն Պարսկաստանի Տուս (Tus) քաղքէն եկած իմամ մի,

« Սկսաւ նեղել զքրիստոնեայս, և պար-
» գեւներ պահանջել կաշառի կերպով, ին-
» չուան ուր որ իր իշխանութիւնն հասնէր.
» յետոյ այն երկու եկեղեցիներն այլ փակել
» տուաւ, մեծին սպասները կողոպտելով, և
» դրան արգելք դնելով խոշոր գերան մի. ին-
» չուան հիճր. 581 (Քրիստոսի 1185) տար-
» ւոյ Շապան ամսոյ 13ին, ուրբաթ օր: Այս
» ատեն Հայ մի եկաւ, որ կ'ըսէր թէ բա-
» րեկամ էր Թաճ ատ-տաւլա (Թագ պետու-
» թեան մականուանեալ) Վահրամայ Հայոց,
» (Շնորհալւոյ հօրեղբօր) որ Ալ-իմամ Հա-
» ֆըզ (խալիֆայի) վզուրկն էր. և կ'ըսէր, թէ
» այս վզըրկին ստակները թաղած էր մեծ
» եկեղեցւոյն մէջ, և հիմայ եկած էր զանոնք
» հանելու: Բայց իր ըսածին մտադրութիւն
» չըրին. սակայն ինքն, կ'ըսուի, թէ այնքան
» պնդեց իր երեւակայածը, որ եկեղեցին
» բացին իրեն, և սկսաւ տեղ տեղ փորել.

» յետոյ ըսաւ. Ստակն աներեւոյթ եղեր է
» այս տեղէս. եկեղեցին կողոպտողներն ա-
» ռած են. և սկսաւ գանգատիլ, թէ անի-
» րաւութիւն մ՚եղած է: Եկեղեցին իրեն
» համար բաց մնաց, և քանի որ այս երե-
» ւակայութեան մէջ էր, կեցաւ հօն. և երկ-
» րորդ կնիք մ՚այլ դրաւ Մէլիք ալ-Մու-
» զաֆֆարի (վերոյիշեալ Թագիատտին) դը-
» րածին վրայ: Բայց նոր նորոգութիւն մի
» չեղաւ հօն: Երբ Թագիատտին յԱսորիս
» գնաց, հիճր. 582 Շապան ամսուն (1186
» Քր.) և եկաւ Ալ մէլիք ապու-Պէքր (Սա-
» լահատտինի եղբայրն, իբրեւ խնամակալ
» անոր որդւոյն), հրամայեց՝ որ այդ երկու
» եկեղեցիները զատեն իրարմէ, նոյն տա-
» րին՝ Ռամազանի 10ին, և Ղփտիք և Հայք
» տիրացան եկեղեցեաց և սկսան գործածել,
» յետ տարի մի և 15 օր գոց մնալու:
» Ղփտիք մեծ եկեղեցւոյն մէջ պաշտօն կա-
» տարէին, Քուհիաք (կամ Խոյաք ըստ Ղըփ-
» տեաց) օրհնեալ ամսոյ առաջին օր (Նոյեմ-
» դեկտ.), ամբիծ Մարտիրոսաց 903 թուին
» (1187 Քր.). և անկէ ետեւ Ղփտիք թող
» չտուին Հայոց՝ մեծ եկեղեցւոյն մէջ պաշ-
» տել: Այս բանիս համար ժողովք ըրին
» գլխաւոր անձինք. և երկու եկեղեցիքն այլ
» նորէն Հայոց ստացուած եղան »:

Որքան ատեն Միացին եկեղեցիքն ի ձեռս Հայոց, ծանօթ չէ մեզ. գոնէ Արուսաճլի ատեն իրենք էին տէր. իր գրոց Յաւելուած և մեր յառաջաբանի մէջ յիշուած Մաքրիզի՝ երկար գրէ այս տեղւոյ յիշատակին. և թէ, վերը յիշուած դիպուածներէն դար մի վերջը՝ իպն Քալաուն Նասր սուլտանին՝ ջրադարձներ և լճակ մի շինել տուած ատեն՝ այդ եկեղեցեաց չորս կողմը, ժողովուրդն ինքնօրէն աւրեր փլուցեր կողոպտեր է զանոնք և ուրիշ եկեղեցիներ այլ: Իսկ մեր պատմիչն՝ վերջի ըսածէն ետեւ, զանոնք այլ զՀայս այլ կու թողու, և կ'անցնի ուրիշ և ուրիշներուն եկեղեցեաց ստորագրութեան. զորս մենք այլ թողլով իրենց, մերայոց վերաբերեալ տեղիքն և մեծ պաշտօնեայքը յիշենք՝ իր ըսածներովը և ուրիշներու ծանօթութեամբք:

## Ե.

« Տուրայի, طرا , վանք և եկեղեցին . —
» Բրտի վանք بديرالفخار անուանեալ վանքն՝
» նուիրուած է Ս. Մերկիւրիոսի. կ'ըսուի
» թէ և յանուն Ս. Թէոդորոսի այլ կոչուած
» է, կայ հոն և եկեղեցի մի յանուն փառա-
» ւորեալ Ս. Գէորգեայ, Տուրայի վիճակին
» մէջ, (Նեղոս) գետոյն (աջ) եզերքը, (Այ-
» գեստանէն հազիւ երկու մղոն հեռի, ի հա-
» րաւակողմն)։ Եկեղեցին փոքր էր քանի որ
» յակոբիկ Ղփտեաց ձեռքն էր. բայց երբ
» Գրիգոր պատրիարքն (կաթողիկոսն) Հայոց
» եկաւ յԵգիպտոս, և Հայք (իրենց ազգա-
» կից վէզիր) Ամիր ալ–ճիւյիւշ Պատրի չորս
» կողմ ժողովեցան, Յակոբկաց Անպա
» (Հայր) Կիւրեղ պատրիարքի ատեն, և Տու-
» րայի վիճակն տրուեցաւ Հայոց, ասոնք ա-
» ռին զեկեղեցին և փլուցին, և անոր տեղ
» մեծ ընդարձակ եկեղեցի մի շինեցին՝ շատ
» գմբեթներով, և կոչեցին յանուն Ս. Գէոր-
» գայ. վրան այլ աշտարակ մի կանգնեցին
» (իբր զանգակատուն), որոյ դուռն եկեղեց-

» ւոյն միջէն էր. եկեղեցւոյն չորս դին այլ
» պատ քաշեցին. այն շրջապատին մէջ կար
» աղբիւր մի և ջրաղացք մի ևս. Եկեղեց-
» ւոյն չորս կողմն այլ կար տեղ նարընջենի
» ծառոց և երկու տուրմայրե, ويرقن, որ
» են պտղատու արմաւենիք, և ուրիշ ծա-
» ռեր: Երբոր Հայոց վրայ փորձանքներն
» եկան, եկեղեցին նորէն դարձաւ Յակոբ-
» կաց, Անպա Մարկոսի պատրիարքութեան
» ատեն, որ առաջ կոչուէր Ապու՛լ Ֆարաճ
» իպն Զարահ, և էր ԶԳ ի յաջորդութեան
» (պատրիարքաց Աղեքսանդրիոյ):... Ուրիշ
» գրուածի մի մէջ կ'ըսուի, թէ Ս. Գէորգայ
» վանքն ի ձեռք բերաւ Ապու Նասիր քա-
» հանայն, աւելի ճանչցուած իպն ալ-Քուս-
» դալ անուամբ, և հանդիսապէս թաղուեցաւ
» յամին 559 (Քրիստոսի 1164) ի Բաունա
» ամսոյն, ի պատրիարքութեան Անպա Յով-
» հաննու, հաւանութեամբ Հայոց: Ապու
» Նասիր՝ եկեղեցւոյն վերնայարկին վրայ ե-
» կեղեցի մ'այլ շինեց յանուն Ս. Մինասայ,
» և ուրիշ մ'այլ յանուն մեծի Ս. Յովհաննու
» Մկրտչի և Գրիգորի. այս երքի եկեղեցիս
» կենդրոնական մեծ եկեղեցւոյն հարաւա-
» կողմն էր, Հայոց վանաց մէջ ի Տուրա, և
» օծուեցաւ ի10 Բաունա ամսոյ, յամի 902

» իրաւափառ Մարտիրոսաց (1181 Քրիս-
» տոսի)․ շինութեան ծախքը նախ վճարեց
» Իպն Մաշքուր, ի ժամանակի օծմանն յԱ-
» պու Մանսուրէ, որ և էր վերակացու շի-
» նութեան պարսպաց Գահիրէի և Մսրայ։
» Այս վանաց մէջ կայ աշտարակ մի, աղօ-
» րէք մի, և պարտէզ մի, որ Հայոց ստա-
» ցուած էր․ և երբ անոնցմէ ելաւ, Ցակո-
» բիկք ստացան, 600 թուականէն ետեւ
» (Քրիստոսի 1204)։ Երբ Ապու Եասիր մե-
» ռաւ, վանքն եղաւ ստացուած իր աշակեր-
» տաց և Ղփտեաց, և այսպէս մնաց մինչեւ
» մեր ատեն»։

Այդ 1204 թուականէն ինչուան Սրբուահլի գրութեան ատեն, ինչպէս յառաջաբանիս մէջ տեսանք, շատ տարի չէր անցած․ յետոյ Տուրայի վանաց և եկեղեցւոյ ինչ ըլլալը՝ քննելի է Բըտլէրի գրոց մէջ։ Մենք մտաբերել տանք՝ որ այդ տեղւոյ յիշեալ փոքր եկեղեցին՝ յանուն Ս․ Գրիգորի՝ անտարակոյս էր Լուսաւորչին մերոյ, զի և վկայուի ի ձեռս Հայոց ըլլալն։ Երկրորդ մտաբերելին է՝ մեծագոյն եկեղեցւոյ շինութիւնն և վանաց պայծառութիւնն, շնորհիւ մեծազօր Հայ վըզըրկին (Պատր ալ-Ճամալի կամ Ամիր ալ-Ճիյուշ) և մեծափայլ Գրիգոր Վկայասէր կա-

թողիկոսի։ Տեղեկացս մօտ լերանց գագաթում Ալ–Քուսայիր վանաց Մելքիդաց եկեղեցիները ստորագրելու առեն՝ կու յիշէ Աբուսահլ Գահիրէի պարիսպներու շինութիւնը Ալ–Մուստանզիր խալիֆայի և Ամիր ալ–Ճիյուշ Պատրի առեն. այս տեղ ծանօթաբարն յիշէ ըստ Մաքրիզեայ, որ նախ Ալ–Միւիզզ խալիֆայի առեն շինուեցան պարիսպք Գահիրէի, յամի 969–70. բայց դար մի վերջը 1087, մեր Պատր վզուրկն՝ փլուցանոնք և աւելի ընդարձակ շինեց, Յովհան կրօնաւորի մի վարպետութեամբ, որ Քուսայիրի եկեղեցեաց մէկին մէջ թաղուած է։ Դար մ'այլ վերջը՝ Սալահատտին նորոգեց և մէկ կողմէն ընդարձակեց. իսկ հիմակուան վիճակի մէջ՝ աւելի Պատրի շինութեան մնացորդք կ'երեւին քան ուրիշներուն։

Պատրի յիշատակ մ'այլ կ'ընէ Աբուսահլ՝ Նուբիոյ տեղագրութեան մէջ. երբ յիշէ այդ երկրին Սողոմոն թագաւորը, որ քաղաքական հոգերը թողլով, Ս. Ոնոփրիոսի նուիրուած եկեղեցւոյ մէջ աղօթքով կ'անցընէր ժամանակը. երբ այս բանս իմացուցին Մուստանզիր խալիֆայի,

« Ամիր ալ–Ճիյուշ Պատր վզուրկ՝ մարդ
» խաւրեց և բերել տուաւ զնա ի Գահիրէ. և

« երբ հասաւ քաղքին դրան, մեծ հանդի-
» սիւ և պատուով և երաժշտաց գունդով մի
» ընդունուեցաւ, ընտիր հեծնելու ձի մ'այլ
» ղրկուեցաւ իրեն. հրամմեց (վզուրկն) տէ-
» րութեան պատուաւոր անձանց՝ որ աղէկ
» հոգան զնա. և յետոյ բնակեցուց վայելուչ
» տան մէջ, ճոխաբար զարդարած մարմար
» քարամբք, քանդակագործ տախտակներով,
» գոյնագոյն և ոսկեթել հիւսուած դիպակ-
» ներով: Տարի մի ապրեցաւ նա այս տեղ.
» և վզուրկն ստէպ կ'երթար զինքը տեսնելու,
» այլևայլ իրաց վրայօք խօսելով հետը, և
» ուշ դնէր անոր ըսածներուն. և կու տեսնէր
» որ նա միայն փափագէր Աստուծոյ, — ո-
» րում փառք և գովութիւն, – բոլոր սրտով
» և մտօք հրաժարելով ամեն մարդկային բաղ-
» ձանքներէ: Այսպէս տարի մի ապրելով Թա-
» գաւորն՝ մեռաւ. և թաղուեցաւ ի վանս Ս.
» Գէորգայ յ'Ինանտաք (յարուարձանս Գա-
» հիրէի) ի պատրիարքութեան Կիւրղի ԿԶ
» պատրիարքի. գերեզմանն եկեղեցւոյ պա-
» րըսպին մէջ է, մօտ ի դուան եկեղեցւոյն,
» մտնողին աջակողմը:.. Եւ կոչուեցաւ Սուրբ
» Թագաւոր »:

Պատրի ստէպ երթալ տեսնուիլն և ուշա-
դրութեամբ մտիկ ընելն այդ բարեպաշտ

Թագաւորին խօսից, գուշակել տայ իր խղճի տագնապը կամ երկմտութիւն մի․ վասն զի ինքն այլ երկմիտ և կէսկէս էր, կէս քրիստոնեայ և կէս մոլիման․ և այնքան քրիստոնէից պաշտպանելն և եկեղեցւոյ մէջ Թաղուիլն (ինչպէս առաջ յիշեցինք), երևցընէ, որ թէ արտաքուստ չէր, ներքուստ իր հայրենի կրօնքը չէր ուրացեր։ Խորագէտ մարդ, զգաստ պաշտօնեայ, քաջ սպարապետ, փառաւոր իշխան և վզուրկ, նեցուկ պետութեան Եգիպտոսի, և գրեթէ վարիչ՝ 20 կամ աւելի տարի․ բայց ոչ կատարեալ արիասիրտ․ զի ոչ պարզահաւատ՝ առաջի մարդկան․ գոնէ իր վերջի մտածութիւնն մեզի անյայտ, Աստուծոյ յայտնի։ Իր մահն հանդիպեցաւ յամին 1094․ աշխարհօրէն ոչ միայն մեծ փառօք և համբաւով, այլ և յարգանօք և սիրով․ որով՝ իր յաղթութեանց առաջնորդուած զօրականք՝ մէկէն իրեն տեղ հռչակեցին և նըստուցին վզուրկ իր որդին, Շահնշահ Ապու'լ Խասիմ, որ համառակօրէն յԱրաբաց Ալ–Աֆտալ կամ Աֆտալ կոչուի, الافضل شاهنشاه , և երեք խալիֆայից առեն իբր 30 տարի վարեց իր մեծ իշխանութիւնը հօրը նման, նա և ըստ հաւատոց․ բայց ոչ անոր պէս խաղաղ վախճան ունեցաւ, այլ սպանութեամբ, յամի

1122. Մաքրիզի և ուրիշ Արաբացի պատմիչք
շատ անգամ յիշեն զնա. իսկ Աբուսահլ ի
ստորագրելն զվանքն Թամվայիհ, որ ի հա-
րաւակողման Տուրայի, կ՚ըսէ.

« Շահնշահ շատ հեղ կ՚իջեվանէր այս
» վանքիս մէջ, և ատեն կ՚անցընէր խառ-
» նափնդոր ու վայրապար. վանքին քով այլ
» պարտէզ մի յարդարեց, ամեն տեսակ ծառ
» և արմաւեններ տնկելով. աղբիւրներ այլ
» վազցուց, վրանին ջրադարձ անիւներով.
» Թանձր ցանկով մ՚այլ շրջապատեց պար-
» տէզը: Վանացս տարեկան հարկն առ դան-
» ձարան տէրութեան՝ 11 դենար էր. յետոյ
» այս հարկս դադրեցաւ, և անոր տակով
» ձիթահանք շինեցին վանաց պարսպին մէջ,
» ամենայն մասամբք կատարեալ: Վանքն 47
» ֆետտան (իբր 200 հազարչափ քառակու-
» սի) երկիր կալուած ունէր, զոր գրաւեցին
» Ղուզք և Քուրդք՝ Նասր Եուսուֆ (Սալա-
» հատտինի) թագաւորութեան ատեն: Այս
» վանացս մէջ հանգչէր մարմին (Ս.) Պափ-
» նուտիոսի, որ վանացս առաջնորդ եղած էր,
» և տօնն կատարուի ի 15 Ամշիր ամսոյ. պատ-
» կեր մ՚այլ կար այս տեղ՝ Տիրամօր անարատ
» Կուսին Մարիամու: — Ալ-Աֆտալ (Շա-
» հընչահ) այն տեղ՝ շինուածքին վերնայար-
» կին մէջ նստած կու զուարճանար »:

Աբուսահլ ուրիշ տեղ մի՝ Համրա Թաղին մէջ Ս. Ոնոփրիոսի վանքը ստորագրելով, կու յիշէ Շահնշահի գրագիրը,

« Շէյխ Ապու՛լ Ֆատլ իպն Ուսքուֆ կո-
» չուած, որ հանապազորդէր աղօթելու այս
» եկեղեցւոյս մէջ և հաղորդուելու. և յետ
» հաղորդութեան ամէն օր որ գար՝ քահա-
» նային համար պնակին մէջ դենար մի կու
» ձգէր, անոր պաշտօնակատարութեան և
» անոյշ ձայնին հաւնելով։ Այս քահանայն՝
» Պահր ալ-Ճիզէ (ծովակին) մէջ խղդուեցաւ.
» Աստուած հանգիստ պարգևէ հոգւոյն։

Եգիպտոսի ուրիշ արաբագիր պատմիչք ա-ելի երկար այլ պատմեն Աֆտալի մահը և գործերը. որոց մէջ նշանաւոր է՝ Երուսաղէմի Ա. Պաղտին Թագաւորին հետ կռուիլ և զինադուլ ընելն. յամի 1115։ Իսկ իր մահուան պատճառէր իր մեծ և համարձակ իշխանութիւնն. ուսկից վախնալով Ամէր խալիֆայ, փորձեր է, կ'ըսեն թունով մեռցընել. և չյաջողելով, այն ատեններ անուանի Սրիկայից կամ իշխանասպան Աւազակաց ձեռօք՝ գաղտուկ սպաննել տուեր է, կամուրջի մի մօտ նեղուց տեղ մի. ուր որ յետոյ (1129–30) զինքն այլ սպաններ են ընկերք նոյն աւազակաց, գրգռուած Աֆտալի հօր և իր

բարեկամներէն ։ Սորա սպանուելէն ետեւ՝ Ամէր բանտել տուեր էր անոր Ապուհալի Աֆտալ որդին, և գրաւեր ստացուածքը, որ զատ տեսակ տեսակ նիւթերէ, զուտ սակ չորս միլիոն ոսկի ունէր ։ Ամէրի սպանողք՝ հանեցին զԱպուհալի ի բանդէ, և վըրուկ ու զօրապետ կարգեցին իր հօր և պապուն նըմա ն ։ Անոնցմէ աւելի իշխանասէր և յանդուգն երեւցած համարուի սա . իբր զի, Ամէր աբու զաւակ չունէր, և ըստ իրենց օրինաց կանայք չէին թագաւորեր . և զի իր կինն յղի էր (իր սպանուած ժամանակ) սպասէին Եգիպտացիք իրենց բաղդին, Ապուհալի այլ իրենին ։ Կինն ծնաւ աղջիկ . Ամերի եղբայրն Հաֆըզ՝ խալիֆ յաջորդեց . և տեսնելով որ Ապուհալի բոլոր իշխանութիւնը և գրեթէ գահն ալ գրաւել կ'ուզէ, տարի մի չանցած՝ (1130–1) սպաննել տուաւ զնա ։ Անունէն յայտնի է որ սա այլ իր հօր պէս մալիման էր . և չափազանց իշխանասիրութեամբն՝ կենացը հետ իր հարց յիսնամեայ վըրկութեան այլ վերջ տուաւ ։

Զ.

Շահնշահի մահուանէն տասն տարի մի վերջը՝ ուրիշ Հայ վզուրկ միանգամայն և քաջ զօրավար մի փառօք փայլի յԵգիպտոս. Արուստհլի Ջուհրեայ վանաց ստորագրութեան մէջ յիշուածն Թաճ ատ–տաւլա Պեհրամ, تاج الدوله بهرام. ծանօթ ազնուական ցեղէ Պահլաւունեաց, ի մօրէ այլ Գրիգ. Մագիստրոսի Թոռն, հօրեղբայր Ս. Ներսիսի Շնորհալւոյ և եղբայր Գրիգորիսի եպիսկոպոսին Եգիպտոսի, Վահրամ. սորա հետ եկած էր նաև միւս եղբայրնին, Վասակ, զոր և Վասիլ և Եասալ الياصال կոչեն արաբացի պատմիչք: Շնորհալի իր Վիպասանութեան վերջ իր ցեղին ազգաբանութիւնն ընելով, յիշէ զայս երեք հօրեղբարքն այլ, նախ մեծ Վկայասէրին համար ըսելով, թէ յԵգիպտոս՝

«Անդ ի յաթոռըն սուրբ եղեալ
Զաւ ի քեռէն որդի ծընեալ
ԶԳրիգորիոս համանուանեալ...
Որ Յովսեփայ մեծին նմանեալ՝

Ըզհամազգիս ըզկնի ձըգեալ,
Զարի եղբարս իւր քաջացեալ,
Ըստ Յեսուայ զօրավարեալ.
Որոյ Վահրամ վերաձայնեալ,
Միւսոյն Վասակ անուանադրեալ:
Որք վեհագոյն փառս ընկալեալ
Եւ մեծարգի պատուոյ հասեալ.
Ըզպատերազմ ազանց վանեալ
Հակառակաց յաղթող գըտեալ.
Վասն այսորիկ շըքեղացեալ,
Եւ աշխարհի նոցունց տիրեալ»:

Տիրելն շատ է, բայց ստուգիւ տեսակ մի տիրապետել և պայազատել էր կէս դար, Պատրի և Շահնշահի վգըրկութիւնն. վասն զի թոյլտուութեամբ կամ թուլութեամբ Խալիֆայից, իրենք հոգային թէ քաղաքական թէ զինուորական գործերը, և թէ տնտեսականը, այսինքն տէրութեան գանձն կամ եկամուտն. որ Պատրի վերահոգութեամբ, և Աշ–Խահհալ մեծ ղատիի մի գործադրութեամբ՝ տարեկան երեք միլիոն դենարէն աւելի էր. իսկ Շահնշահ, կ՚ըսէ Արուսահլ, գլխահարկը աւելցուց մինչեւ մէկ դենար և $^3/_4$: Այսոնց գործոց՝ թէ ոչ շատ տարի՝ այլ շատ մասամբ հետեւող և յաջորդ եղան Շնորհալւոյ գոված հօր-

եղբարքն, մանաւանդ երիցագոյնն Վահրամ՝ Թադ պետութեան մականուանեալն, հաւատարիմ ամիրապետին, հաւատարմագոյն Ամենապետին, հայրենի և պահլաւունի ցեղին կրօնապահութեամբ, և առաւելեալ իսկ քան զիշխանակից ազգակիցսն, ինչպէս քիչ մի յետոյ պիտի տեսնեմք: — Վահրամ՝ վզուրկ եղաւ Հաֆըզ խալիֆայի առեն, որ թուլութեամբ չէր կարող կառավարել. և նախ իր որդին ապստամբեցաւ և սկսաւ զուրիշներն այլ գրգռել. զօրականք աղաչեցին և խալիֆայն հաւանեցաւ որ Վահրամ յանձն առնու վեզիրութիւնը, փոխանակ ապստամբ որդւոյն: Վահրամ որ Պատրի հետ Եգիպտոս եկած կ'ըսուի, և անոր օգնական էր և յառաջադէմ ի զինուորական կարգի, զիջաւ անոնց աղաչանաց, և իշխանութեան և բանակին գլուխ կենալով, երբ մօտեցաւ ի մայրաքաղաքն, ապստամբն (Ալ-Հաչէն) թողուց փախաւ, և Վահրամ խաղաղցուց ու բարեկարգեց աշխարհը: Բայց երբ երկու տարի վերջը (1137), Ռիտուան Վալախշի անուամբ մէկն՝ նորէն գրգռեց զժողովուրդը, իբր թէ Վահրամ ամէն պաշտօն և պատիւ Հայոց և քրիստոնէից կու տայ, Հայոց հեծելազօրք և աղեղնաւորք ուզեցին նորէն հալածել զա-

պլատամբները․ բայց Վահրամ՝ որ աւելի բարեպաշտ էր քան փառապաշտ, համոզեց զանոնք որ թողուն բնիկ երկըրցոց իրենց հողը, և իրենք իրենց ստացուածքն առնուն երթան ի Սայիս (հիմայ Սիւյիւտ), ինքն այլ գնաց յ'այն կողմն, ի Թեբայիդ, ուր դեռ հին ճըգնաւորաց հետևող վանքեր և վանականներ կային և ուր իր եղբայրն Վասակ իշխան էր։ Ռիւտովան յաջողեցաւ յանկարծ վրայ հասնիլ, բռնել ու սպաննել զՎասակ․ ուզեց բռնել և զՎահրամ, (և ըստ ոմանց բռնեց), բայց իմանալով որ նա քաշուած ի վանս՝ ճգնաւորի կեանք կ'անցընէ, թողուց ազատ, ու եկաւ մայրաքաղաքին Միացեալ Հայերը հալածեց, և Զուհրեայ վանքը աւրեց։ Բայց ինքն այլ բռնուեցաւ և սպաննուեցաւ։ Խալիֆայն աղաչեց Վահրամայ՝ որ դառնայ իր վեզիրութեան աթոռը․ սա յանձն չառաւ, այլ իբրև հիւր ատեն մի կեցաւ յարքունիս, և յետոյ ի վանորայս, մինչև ի մահն։ Արուսահլ չի պատմեր այս բաները, միայն ի ստորագրութեան հաչակաւոր Ճերմակ վանաց, بير القديس, կամ Դփտեաց մեծ Ս․ Շնուտի կամ Շանուտի, որ և Սանութիոս, կ'ըսէ․

«Վահրամ քրիստոնեայ Հայն՝ որ Ալ–

» Հաֆըզ Խալիֆայի տանն վզուրկ եղած էր,
» և յետոյ կրօնաւոր, այս վանացս մէջ միան_
» ձնացաւ, իր պաշտօնէն մերժուելէն ետեւ.
» վերջը Թէպէտ և խիստ շատ տկար և հի-
» ւանդ էր, բայց փափագեցաւ երթալ ի
» Գահիրէ. ուր և տարուեցաւ, և դեռ ողջ
» հասաւ »:

Ուրիշ նշանաւոր վանքի մի, Ալ Քուսաիր կոչուած ( القصير ) ստորագրութեան մէջ յիշէ Արուսահլ զեղբայրն Վահրամայ. որ երբ այդ դարէ ի վեր (1010ին) աւրըշոըլ-կած և կողոպտուած վանքին համար հրաման տրուեցաւ կրօնաւորաց՝ Նորոգելու,

«Ալ-Եսսալ (Վասակ) եղբայր Թաճ ատ-
» տաւլա Վահրամայ՝ սահմանեց այդ վանաց՝
» իբրեւ փոխարէն մնասուն, 16 ֆէտղան եր-
» կիր »:

Այդ իբր ուխտատեղի պատուեալ վանքն՝ Եգիպտոսի արեւելեան կողմի լերանց վրայ շինուած է, յանուն հռչակաւոր Ս. Արսէն ճըգ-նաւորի, որ հօն Թաղուած էր: — Յիշեալ տարածութեան չափն, մէկ ֆէտղան կամ ֆէտտան, 4200 քառակուսի Չափ (մետր) է.

Վահրամներէ և Վասակներէ շա՛տ առաջ, և նոյն իսկ Արաբացւոց Եգիպտոսի տիրելուն

ժամանակակից և գործակից՝ ծանօթ և ու-
բացեալ հայազգի Վարդանն, որ առաջ Յունաց կայսերաց զօրավար ըլլալով Հոռոմ կոչուի, وردان الرومي, յիշէ Աբուսահլ, Արաբաց գըլխաւորին (Ամր իպն ալ-Ասի), թէ բարեկամն էր, և Եգիպտոսի հարկապետ եղաւ, բայց յետոյ սպանուեցաւ յԱղեքսանդրիա. սակայն ի հին Գահիրէ կոչուած և հիմայ Ֆուսդադ քաղաքի՝ երկար ժամանակ լսուէր իր անուամբ Շուկայն կամ վաճառանոցն Սուք Վարդան, سوق وردان. որոյ մօտ ճեմելիքն այլ կոչուէր Ապու Ֆարվայի գիւղակ, قاق: (Այս եռքի անունն՝ որ վաճառատուն նշանակէ, քանի մի հեղ յիշուած է յարձանագիրս Հայոց հըռչակեալ Անի քաղաքի): — Մեր համազգեաց այսպիսի բարձր գահերով և մեծամեծ պաշտամամբք հանդիսանալն յԵգիպտոս յ'Է, ԺԱ, ԺԲ դարս, թէ այն երկրին թէ մեր երկրի պատմութեան մէջ նշանաւոր կէտ մ'է. որոյ զուգակշռեն անշուշտ ընթերցողք՝ մեր դարուս և այս օրերուս նոյն հին աշխարհին մէջ, մերձաւորապէս նման պատիւ և պաշտօններ վարած և վարող ճարտար ազգային փաշաներ և պէկեր, Պօղ. Եուսուֆեան, Արթին Չրաքեան և որդիքն՝ Եաքուպ և Եուսուֆ, Նուպար, Պետան, Հէքէքեան, Տիգրան Ապրոյ, և այլն:

## Է.

Այլեւայլ յիշատակք Հայոց եկեղեցեաց եւ վանաց յԵգիպտոս. — *Մինչեւ հիմայ մեր փոխագրած պատմական Հայոց յիշատակներէն դուրս, Աբուսահլ ուրիշ երկար կամ նշանաւոր բան մի չի գրեր մերայոց վրայօք, բայց եթէ անոնց ունեցած քանի մի եկեղեցեաց և վանաց, որ են հետեւեալքն, ըստ կարգի կամ շարքի իր գրոց, և ոչ ըստ դրից տեղեաց կամ աշխարհագրութեան:*

*Եգիպտոսի գերահռչակ բրգանց մօտերը՝ Տահշուր գեղի՝ Գրիգոր Ալ-Քայիսի եպիսկոպոսին շինած Ս. Աստուածածնի եկեղեցւոյն աւրուիլն ի հակառակութեան Բույիհանեանց և Ճիւյիւշեանց՝ յիշելէն ետեւ, Աբուսահլ՝ Նեղոսի արեւմտեան ափէն կ'անցնի յարեւելս, կու հեռանայ մինչեւ մօտ յափունս Կարմիր ծովու, և կու ստորագրէ շատ անուանի և ցանկալի տեղ մի, կրօնական և կրօնաւորական նկատմամբ. ամենահռչակ Ս. Անտոնի վանքն և յետին հանգստարանն, որ քաղաքականօրէն հիմայ Իթֆիհ կամ Աթֆիհ վիճա-*

կին վերաբերի։ Այդ անապատ տեղն ընտրեց կ՚ըսէ «Անպա Անտունեան եգիպտացի, կամ » Անտոնիոս, Աստղն անապատի և Հայր միան- » ձանց, առաջին անապատակեաց․․․ Այս » վիճակին Իփթիհի եօթն եկեղեցիք կան, » վեցն Ղփտեաց, մէկն Հայոց, որ կոչուի » յանուն Ս. Գէորգայ վկայի»։ Շատ վայե-լուչ և գրեթէ անկարելի էր Հայոց՝ — որք ա-մենայն արեւելեայց հետ մեծապէս պատուեն զհասարակաց պատուելի «Նախասկիզբն միան-ձանց», որում այս բառերով սկսուած ար-ժանավայել շարական մի երգած են և երգեն ամեն տարի, — որ անոր վերջին ճգնութեան և ճգնակիր մարմնոյն հանգստարանին մօտ յա-տուկ վանք և եկեղեցի մ՚այլ ունենային, որ թուի թէ և չէն էր Աբուսահլի ժամանակ, զի կան կ՚ըսէ և ոչ կային եկեղեցիքն։

Մէյտում կամ Սաֆդ Մայտուն՝ Ճ/զէ գա-ւառի Ջաւիէ վիճակի մէջ գեղ մի է, «ուր » կայ եկեղեցի մի հասարակաց, երեք սեղա- » նովք․ մէջտեղին՝ Ղփտեաց է, յանուն » քաջ նահատակին Թէոդորոսի, երկրորդն՝ » Հայոցն է, յանուն փառաւորեալ վկային » Ս. Գէորգայ, երրորդն նուիրեալ Տիրուհ- » ւոյ կուսին Մարիամու՝ Մելքիտաց է»։

Ֆայում — Հին և անուանի քաղաք է

համանուն վիճակի, և այսպէս կոչուի Ֆիւմ բառիւ Ղփտեաց, որ լիճ կամ ծով նշանակէ, քովի անուանի հին Մերիս լճին համար, յորում շատ կոկորդիլոսք կային, այն պատճառաւ Կոկորդիլոպոլիս անուանեցին, նա և Արսինոյէ: Ցաշխարհահամարի 1885 տարւոյ՝ 26000 բնակիչ ունէր: Արուսահլ կ'ըսէ, թէ Քիֆդ Մեսարեմի որդին, թոռն Քամայ՝ շիներ է այս քաղաքս, և Յովսէփ նահապետ նորոգեր է, և Նիւղոսաչափ մի հաստատեր է. յետ երկար ստորագրութեան՝ վերջացընէ այսպէս. «Մելքիտք այլ եկեղեցի մի ունին » Հայոց թաղին մէջ». գուշակուի ուրեմն որ մերոնք այլ եկեղեցի մի ունէին, զոր չի յիշեր, և թէպէտ այս Ֆայումի վիճակին մէջ 25 վանք կային կ'ըսէ, բայց հազիւ երկու կամ երեք եկեղեցի յիշէ, որոց մէկն յանուն Միքայէլ հրեշտակապետի, շատ մեծ և շատ գեղեցկաշէն:

Պահումալիս. — Այս տեղս յայտնի չէ հիմայ, կ'ըսէ Թարգմանիչն Արուսահլի. իսկ սա յիշէ հօս քանի մի եկեղեցի, որոց մէկն յանուն Ս. Արմենիոսի, որոյ համար Մաքրիզի գրեր է, թէ հնագոյն ճգնաւորաց մէկն է և շատ հռչակաւոր. Ղփտեաց Ցայմաւուրք քանի մի համանուն՝ Հարմանուս,

Հարմանա՝ Սուրբեր յիշեն. գուցէ հնագոյնն
ազգաւ Հայ էր և մեր ազգի արեւմտեան ա-
նուամբն ճանչցուած և ոչ անձին բնիկ ա-
նուամբ։ — Մաքրիզի այլ յիշէ Պոռ Հարմինա
վանքն Քաւ ալ-Խարապ կոչուած մեհենա-
տեղւոյ մօտ, ուր շատ հին արձանագիրք կան,
յիշեալն այլ անուանի սուրբ ճգնաւոր մ'է։

Ալ-Խուսուս. — Թէ և ոչ որոշակի բայց
յայտնի է ասոր դիրքն, Սիւյուդ կամ Ասիուդ
գաւառի և մեծ քաղաքին մօտ, որ հին ատեն
Սայիտ կ'ըսուէր և ի Յունաց Լիւկոպոլիս,
վերին Եգիպտոսի մայրաքաղաք, և հիմայ
30,000էն աւելի բնակիչ ունի։ « Ի Խու-
» սուս, կ'ըսէ Աբուսահլ, Ղփտիք եկեղեցի
» ունին, Հայք՝ վանք մի քաղքին մէջ և եր-
» կու եկեղեցի, քաղքէն դուրս այլ երկու
» եկեղեցի »։ Այս յայտնէ թէ Խուսուսի մե-
ծութիւնն և թէ Հայոց բազմութիւնն այն
տեղ, բայց պատմիչն չի յիշեր ասոնց եկե-
ղեցեաց անունները, իսկ Ղփտեաց՝ քիչ շատ.
և վկայէ որ այս Սիւյուդ գաւառին մէջ ա-
սոնք հարիւրաւոր եկեղեցիներ ունէին։

Շինարա. — Գեղ մ'է ի Միջին Եգիպ-
տոս, Նեղոսի արեւմտեան եզերքում, Ֆաշն
կոչուած աւանին այլ արեւմտակողմը. 2700
բնակիչ ունէր յամին 1885, Ղփտի և Պէ-

տեղի. « Շինարա վիճակին մէջ, կ՚ըսէ Ա-
» բուսահլ, Հայոց քրիստոնէից գաղթական
» մի հաստատուած էր, որք եօթն եկեղեցի
» ունէին, շատ բարեկարգ, քահանաներով և
» միաբաններով. եկեղեցեաց մէկն էր յա-
» նուն Տիրուհւոյ անարատ կուսին Մա-
» րիամու. մէկն յանուն փառաւորեալ Մի-
» քայէլ ( հրեշտակապետի ), միւս՝ երկու
» եկեղեցիք Ս. Մաքսիմոս (?), երկու եկեղե-
» ցիք յանուն Գաբրիէլ հրեշտակի, եկեղեցի
» մի Բաստիդար? بستيدو, կոչուած, եկե-
» ղեցի մ՚այլ յանուն փառաւոր վկային Գէ-
» որգեայ » : Եօթն ըսաւ, ինն համրեց, հա-
ւանօրէն յանուն Հրեշտակապետաց Գա-
բրիելի և Միքայելի մէկ մէկ եկեղեցի ըլ-
լալու էր, որով թիւն հաւասարի. իսկ վերջ-
ընթերին անունն և իսկն անծանօթ է մեզ:

Քալուսանա. — Ըստ Աբուսահլի այս տեղս
Մարաղա կամ յոգնաբար Մարաղաթ վիճա-
կին մէջ էր, որ հիմակուան Ճիրճէ վիճակի
պատշաճի, և կար հօն եկեղեցի մի Ղփտեաց,
եկեղեցի մ՚այլ Հայոց:

Աբուսահլի յիշած այսքան Հայոց վանաց
և եկեղեցիներէ զատ, Մաքրիզի յիշէ մերայոց
աւերակ վանք մ՚այլ մօտ ի վանօրայս Ս.
Յովհաննու Գբեցւոյն և Ս. Անուբիոսի. որոց
տեղիքն հաւանօրէն անծանօթ չեն գիտնոց:

Նոյն Մաքրիզի՝ յիշէ Ս. Մինաս անուամբ եկեղեցի մ'այլ Մորայ ճամբուն վրայ, ընդ մէջ ջրմղին և հողակոյտից, (իրեն ժամանակին տեղագրութեամբ). մէկ կ'ըսուի՝ բայց երեք եկեղեցիք էին իրարու կպած. մէկն Յակոբկաց, միւսն Ասորւոց, երրորդն այլ Հայոց. ամեն տարի տօնախմբութիւն կ'ըլլար անոնց մէջ, և կու ժողովէին քրիստոնեայք ի պաշտօն: Մաքրիզի ԺԵ դարուն առաջին կիսուն ատեն կու գրէր:

Արուասհլի պատմագրոց մէջ կարելի է քանի մի հարեւանցի նկատողութիւնք կամ աւանդութիւնք այլ գտուին՝ մեր ազգին և մեր պատմութեան մերձաւորք կամ յիշեցուցիչք. ինչպէս տեղ մի գերեզմանոց յիշելով՝ կ'ըսէ, թէ Նեստորականք և Հայք այլ իրենց եկեղեցեաց մէջ թաղուին. բայց առջի ըսածէն յայտնուի, թէ այդ տեղ յատուկ գերեզմանոց չունին: — Վերոյիշեալ Սիյուտ (Սայիտ) մեծ քաղաքին ստորագրութեան ատեն, եօթն դուռ ունի կ'ըսէ, որոց մին՝ յարեւելակողմն կոչուի Պապ ալ-Արման, Հայոց Դուռն:

Եգիպտոսի բերոց և արդեանց վրայ խօսելով (Թղթ. 1), զատ յայլոց յիշէ և գըտուած «Իւղ Շողգամի, կարմիր Բողկի, Բալասանի իւղ, Աֆիոն, Ապրամիս և Մեղր-

օղի »: Թարգմանիչն կ՚ըսէ թէ Աբրամիս ابرميس, յունարէնէ առնուած ἀβραμίς, Նեղոսի ձուկ մի է ծանօթ, համեղ և կարմիր, և զարմանայ, թէ ի՞նչպէս Աբուսահլ՝ բուսական նիւթոց և իւղոց կարգին յիշէ զայն: ինձ այլ տարակոյս գայ, միթէ չըլլա՞յ ի մեր նախնեաց յիշեալ Աբրաամ՝ Բալսամն կամ Բալսամնի նման իւղն, որ և Աբրաաղիւղ գրուած կայ.

Շատ տեղ Եգիպտոսի քաղաքաց և գաւառաց սկզբնաւորութիւնը պատմելով, Աբուսահլ աւանդական ազգաբանութեամբ Քամայ որդիք և թոռունք յիշէ, յատուկ և հասարակաց անծանօթ անուամբք, զորս՝ աւելի կամ պակաս՝ գուցէ յիշէն և ուրիշ արաբացի պատմիչք. նախ քան զանոնք յիշէ և Նոյ նահապետի չորրորդ որդի մի՝ Ապու Նախտուր անուն ابو نيطر, իմաստուն և հնարող երկնագնտի, և եղանակաց բաժանման, և այլն, որ Ներբովթի ուսուցիչ կ՚ըլլայ. Թարգմանիչն ամենեւին անծանօթ համարի այսպիսի անուն և անձն. որ մեզ թուի Միխայելի Ասորւոյ, Վարդանայ և այլոց յիշած Մանիտոնն, իբր ծնեալ յետ ջրհեղեղի, հմուտ և հնարող յիշեալ գիտութեանց, որոյ հարազատ քոյր էր Աստղիկ, ըստ մերոց.

Եգիպտոսի հրաշալեաց մէջ, որ ըստ ոմանց քսան են, մէկ քանին յիշէ և Աբուսահլ, յորս և Ճարժուն սիւնն, الاسطوانة المتحيكة մարմար քարէ, 17 կանգուն բարձր, երկու կանգնաչափ տրամագծով, որ տարւոյ մէջ օր մի կու շարժի։ Ուրիշ արաբացի պատմիչք յիշեն՝ ոմն այս ոմն այն միրայ, որ՝ թէ մէկն դպչի՝ յաջ ու ձախ կողմ կ'երերայ. և մէկն այլ կ'ըսէ, թէ այնքան զգալի չէ շարժումն աչօք տեսնելով սեան վրայ, հապա անոր շուքին վրայ նայելով կ'իմացուի. Այս շարժուն Սիւնն կու յիշեցընէ մեզ Տաթևու վանաց Գաւազան ըսուած շարժուն սիւնը. (որոյ որպէսն և ձևն այլ նշանակուած է ի Սիսական, երես 234)։

Յիշեցինք որ Աբուսահլի գիրքն վերջանայ քանի մի քաղաքաց անծանօթ չինողաց յիշատակաւ. անկէ անմիջապէս առաջ, որ է ըսել վերջընթեր տեղեկութիւնն, է սուղ անկցորդ հատուած մի Թամանին տեղւոյ վրայօք. և է այս, « Թամանին ثمنين կոչուած գիւղն ».
» Ասոր մօտերն է Քարտու (Կորդուաց) լեռն,
» ուր որ Նոյի ատեն կեցաւ տապանն, Ճիւտի
» լեռնէն գալով. այնքան բարձր է, որ իրեն
» հաւասար լեռ չկայ երկրիս վրայ, և անկէ
» երկրիս չորս անկիւններն կ'երեւին։ Վկայ

» Հնգամատեանն (Մովսիսի), թէ Աստուած,
» որ գովեալ ըլլայ, հով մի փչեց երկրիս
» վրայ, և ջուրերն սկսան նուազիլ, և աղ-
» բիւրք անդնդոց և պատուհանք (սահանք)
» երկնից դադրեցան, և ջուրք քաշուեցան
» յետ 150 օրերու. և Նոյի նաւն կամ տա-
» պանն՝ նստեցաւ եօթներորդ ամսոյն 27ին
» Քրդաց լերանց վրայ, ի գիւղն Թամանին
» կոչուած, համեմատ առաջուց ըսուածին »։
Արուսահլ առաջուց բան ըսած չէ ասոր վը-
րայօք, գուցէ գրքէն դուրս ընկած ըլլայ,
կամ սկզբան պակաս թղթոց մէջ յիշուած
ըլլար, ուր համարուէր Հայոց վրայօք գրելն։
Գրեթէ համաձայն իրեն՝ շատ դարերով յա-
ռաջ գրած է մեր ծանօթ Մովսէս Խորենացին,
Հռիփսիմեանց ուղեւորութեան պատմութեան
մէջ. «Գաղտ գնացեալ ընդ մէջ Կորդուաց՝
» ընդ լեառն Սողոփ (կամ Սաղուփ) ի
» Բերկրացւոց գաւառին... Վասն այսր լե-
» րին ասի յԱսորւոց, թէ ի նուազել ջուրցն
» հեղեղաց եկաց տապանն ի գլուխ լերինն՝
» որ է Սարարադայ. և ընդ մէջ անցեալ
» Սղոցաձուկնն՝ արգելու գնաւն. և անուն
» քաղաքագեղջն կոչեցաւ Թըմնիս կամ Թը-
» մնենի (կամ Թեմնի). այսինքն, թէ յայսմ
» տեղւոջ ոգիք ութ ելին ի տապանէն »։

Աւելցընեմք մեր հին պատմչին (Խորենացւոյ) խորհրդածութիւնն այլ. «Բայց, այսոքիկ թէ » արդարք կամ սուտք՝ ինձ ոչ է փոյթ. բայց » միայն զի հաճեցուցից (զընթերցողիդ) մը- » տացդ զտարփանս, վասն այնորիկ գրեմ » քեզ զբնաւն »: Եւ դարձեալ աւելցընեմք, որ ինչուան հիմայ այլ լսուի այն կողմերում այն աւանդութիւնն, ութ և ըստ ոմանց քա- ռասուն ոգւոց ջրհեղեղէն ետեւ հօն դադրե- լը: Յոյն հեղինակք այլ յիշեն այդ տեղ Սո- լոփիս գաւառ, ուր և հիմայ այլ կայ Պիրքէ տեղ կամ գեղ մի՝ համաձայն Բերկրացւոց, որ պէտք էր գրուիլ Բերկացւոց. օրինակ մ'այլ գրէ Բագրացւոց:

Գուցէ հաճոյ ըլլայ մերայոց՝ Արուսահլի ըսած բան մ'այլ Ս. Թովմաս առաքելոյ վը- րայ, որ Հայոց այլ քան զայլ շատ առա- քեալս յատուկ սիրելի և պաշտելի է, և ո- րոյ վրայ քրիստոնէութեան առաջին դարերէն սկսեալ ինչուան մեր օրերուն՝ շատ ստոյգ և անստոյգ բան գրուած է: Գրեթէ ամենքն միաբանին Թովմայի երթալուն ի Հնդկաս- տան և շատ կռապաշտներ՝ ի Քրիստոս հաւ- տացընելուն. ուր և ինչուան հիմայ մեծապէս պատուի նա, ի Մալապար. Արուսահլ կ'ըսէ,

թէ յետ քարոզութեանն և նահատակութեան՝ թաղեցին զնա մեծ եկեղեցւոյն մէջ՝ որ իր կենդանութեան ատեն շինուած էր, յետոյ իր անուամբ կոչուեցաւ. երբ դրին մարմինը թանկագին և վայելչակազմ տապանի մէջ, տեսան որ աջն անապական մնացեր էր. ա՛յլ աւելի սիրեցին զնա և հաստատուեցան ի հաւատս. Բայց երբ եկեղեցիէն դուրս ելան՝ յանկարծ ծովուն ալիքներն խուժելով վիժելով եկան չորս կողմ պաշարեցին, և եկեղեցին անմոտանելի եղաւ. սակայն ամեն տարի ի տօնի Սրբոյն՝ յետ քաշուէր ծովն, եկեղեցին բացուէր, և ինչուան հեռաւոր կողմերէ գային բազմութիւնք հաւատացելոց. տապանն հանդիսապէս դնէին, և մէկ կողմէն ծակէ մի դուրս հանէին Թովմայի անապական աջը, և անոր մէջ դնելով զՍուրբ Խորհուրդն, մի առ մի գալով հաղորդուէին. և երբ ամենէն ետքը եկողն այլ ընդունէր զՍրբութիւնը, աջն ինքն իրեն կ'ամփոփուէր, քահանայք այլ դարձընէին զտապանն ի տեղը. երբ ամենքն ալ դուրս ելնէին և հեռանային ի ծովեզերքէն, ծովուն ջուրերն նորէն գային շրջապատէին զեկեղեցին, մինչեւ ի միւս տարին։

Հայք կ'ընդունին Ս. Թովմայի նահատա-

կուփլն ի Հնդիկս, բայց մարմինը չեն թո-
ղուր անոնց, այլ իրենց. վասն զի Առաքե-
լոյն աշկերտներն, կ՚ըսեն՝ ըստ Յայսմաւու-
րաց, գողցան բերին յԱսորեստան. ուսկից
յետ շատ ժամանակի տարուեցաւ Հայոց
Աղձնեաց գաւառին Վան կոչուած տեղին, որ
Թուի Աւան. անկից այլ յետոյ տարին «ա-
» ռաջնորդութեամբլուսափայլ աստեղն, գնա-
» ցեալ հասին ի գաւառն Ռշտունեաց, ի վե-
» րայ գեղջն որ կոչի Պարծիս. և անդ դա-
» դարեալ եկաց աստղն՝ ի բարձր և ի հայեակ
» տեղւոջ, և անդ եդին զնշխարս Ս. Առա-
» քելոյն ի քարեայ տապանի. և շինեալ ե-
» կեղեցի՝ եդին ի դրանդի եկեղեցւոյն. և
» շինեցաւ տեղին վանք միաբանակեցաց. և
» է մինչև ցայսօր »: Երանի թէ և ի մեր
մինչև ցայսօրս՝ այնպէս ըլլար, յայտնի և
արժանապէս պատուեալ:

Յետ ամենայն յիշատակաց Արուսահլի՝ որ
մէկ կամ միւս կերպով մերազգեաց կրնային
հետաքննական ըլլալ, և զոր մենք քաղելով
թարգմանեցինք և ծանօթաբանեցինք, որով-
հետև հեղինակին բուն նպատակն էր և ե-
րևցաւ՝ Ղփտեաց վրայ տեղեկութիւն տալ,
ի մէջ բերենք անոնց մարդաթուոյ համար
գրածն այլ, թէ և իրմէ չորս հինգ դար ա-

ռաջուան վիճակին, այսինքն Արաբացւոց տի-
րապետելէն (յամին 640) իբր դար մի ետ-
քը. «Եգիպտոսի Նուաճման գիրքն كتاب
فضائل مصر. որոյ հեղինակն է Ալ-Քինտի,
» պատմէ, թէ Ալ-Վայիտ իպն Ջուվաա ե-
» կաւ յԵգիպտոս հարկ ժողովելու, Հիշամ
» իպն-Աբդլմէլիքի ամիրապետութեան ատեն,
» (720-43 Թու. Քրիստոսի), և ժողովրդեան
» մարդահամար ընելու, և վեց ամիս կեցաւ
» ի Վերին Եգիպտոս, երեք ամիս ի Ստո-
» րինն, 10,000 գեղէ աւելի համրեց, որոց
» ամենէն փոքրին մէջ այլ 500 արու Ղփտի
» կար, որով բոլոր (արու) Ղփտեաց թիւն
» էր 5,000,000»։ — Հիմայ այլ ըստ 1877
տարւոյ եղած ազգահամարի, Եգիպտոսի բոլոր
բնակիչքն (բաց ի Նուբիոյ) 5,500,000 հա-
մարուին. յորս քրիստոնեայ Ղփտիք իբր կէս
միլիոն, իսկ Ֆէլլահք (կամ Ֆէլլահինք) որ
են արաբախօս և մահմէտական Ղփտիք՝
4,500,000. Մնացեալքն են Պէտէվիք 300,000,
Թուրքք 10,000, նոյնքան և Հայք, Հրեայք
20,000, Եթովպացիք, Նուբիք, Սուտանցիք
43,000, Ասորիք 7000, Յոյնք 20,000, այլ
եւայլ օտարականք, եւրոպացիք 90,000։ Ան-
ցեալ դարուն վերջը Փռանկաց քննիչ գիտ-
նականք 2,500,000 համարէին. հիմայ ոմանք

ինչուան 7 միլիոն ։ Իսկ բնակութեան տեղիքն՝ 40 քաղաք, 3600 գիւղ. ըստ 1847 հաշուի ոմանց՝ 4450 էին գեօղք և քաղաք․ Հիմայ, բաց ի Սուէզի պարանոցին կողմի երկիրներէն (Սուէզ, Իսմայիլիէ, Բորդ Սաիտ) համարուին 60 վիճակք, 113 քաղաքք, 3340 գիւղք․ Միջին իմն հաշուով թէ բնակարանաց թէ բնակչաց թիւն իբրեւ կէսն է Աքուասհլի գրածին և Ը դարու մէջ եղածին։ Հաւանօրէն մօտաւոր վերջի տարիներ աւելի ստոյգ մարդահամար եղած պիտի ըլլայ, զոր դեռ չունինք ի ձեռին[1]։

[1]. Յետ տպագրութեան բանիցս՝ շնորհիւ բարձրապատիւ պաշտօնէից Արքայափայլ Խէտիվէին, ընդունեցանք երկու հատոր մանրամասն աշխարհահամարի 1882 տարւոյ. յորում՝ յատուկ Եգիպտոսի նշանակուին 6,806,381 բնակիչք, ի 13.115 քաղաքս, գիւղս, աւանս, հանդրուանս, և այլն։ Բնակչաց յիշեալ թուոյ մէջ՝ միայն իբր 100,000 են հաստատ բնակարան չունողք։



# ՅԱՒԵԼՈՒԱԾ



Որքան և մեր նպատակն էր լոկ Աբուսահլի աւանդած ազգային յիշատակները հրատարակել, գրեթէ անհրաժեշտ հարկ եղաւ անոր ըսածները բացատրել կամ լրացընել, մանաւանդ իր նման և իր լեզուով գրողներով։ Բաղդն այլ բերաւ այսպիսի մի. մեր (դիմացի երեսին) վերջին ծանօթութեան մէջ յիշեալ գրոց հետ, զատ յայլոց՝ կային Փռանկաց պետութեան ուսմանց պաշտօնէի յանձնարարութեամբ՝ ի Գահիրէ եղած հնաբանական քննողաց տեղեկութիւններ, (Mémoires publiés par les membres de la Mission Archéologique française au Caire). որոց մէջ կայ (Գ. Պրակ Գ. հատորի. 1890) ճոխ գրուած մ'այլ, Պօղոս Ռաւէս գիտնականի, Մաքրիզի արաբ հեղինակին՝ Գահիրէի տեղագրութեան վրայօք. (Essai sur l'Histoire et sur la Topographie du Caire, d'après Makrizi. p. Paul Ravaisse). Ծանօթ է և յի-

չած այլ եմք, որ այս բազմահմուտ արաբացի հեղինակն (յատուկ անուամբ Թաքիատտին) ԺԵ դարուն առաջին կիսում կու գրէր († 1441–2). շատ գրքեր քննելով և շատ ծերերու հարցընելով, Եգիպտոսի՝ և առանձինն Նոր մայրաքաղաքի (Գահիրէի) վրայօք՝ այնքան ծանօթութիւն ժողոված է՝ որքան ոչ ոք, և երկար համբերութեամբ մանրամասն ստորագրած է. բնագիրն՝ որ Խիթաթ (Տեղագրութիւն) կոչուի, արդէն տպագրուած է ի Պուլագ, յամի 1853. ամբողջ թարգմանութիւնն այլ սկսուած է տպագրիլ, իսկ մասամբ՝ արդէն ծանօթ էր արեւելագիտաց: Սպասելով հրատարակման ամբողջական թարգմանութեանն, առ այժմ Ռուեսայ գրածէն կ'ուզեմք աւելցընել, Աբուսահլի և մեր յիշած ազգային եգիպտական վըրկաց վրայ՝ քանի մի տեղեկութիւն այլ:

Արաբացւոց Եգիպտոսի Նոր մայրաքաղաքն՝ Գահիրէ՝ շինուած է իբր ի վերջ Ժ դարու, (970 փրկչական թուին). մէկ մասին (վաճառափողոցի) շինող կըրնայ ըսուիլ նոյն ատեն՝ ուրացեալ զօրավարն Վարդան, որոյ անուամբ յիշուէր շէնքն շատ դարեր, և դեռ լսուի այդ անունն (կամ նոյն իրեն կամ ուրիշ անձին): Անկէ դար մի վերջը՝ (107) իր համ-

ազգի մեծահամբաւ և զօրաւոր վզուրկն Պատր էլ–Ճամալի էմիր էլ Ճիւյիւշ՝ նորոգելով մայրաքաղաքը, իր մեծութեան և խալի ֆայից զօրութեան յարմար՝ նոր և մեծ Վզրկարան մի շինեց (Տար էլ–Վիզարահ) ի Պէրճուան անուանեալ թաղի, որ յետոյ դեսպանաց ընդունարան եղաւ, և այնպէս այլ կոչուեցաւ (Տար էզ–զիյաֆաթ)[1]: Իր մեծոգի և զօրաւոր որդին և յաջորդն Շահնշահ, որ խալիֆայէն աւելի փառօք և զօրութեամբ կ'ապրէր[2], գոհ չեղաւ իւր հօր շինածովը· այլ արքունեաց և պետական շինուածոց հիւսիսային արեւելեան անկեան ընդարձակ կողմ մի գրաւելով, իբր 15 քառակուսի բնամղոն (քիլոմետր), շինեց հոյակապ ամենաճոխ նոր վզըրկարան ապարանք մի, որ իր արաբական անուամբ կոչուեցաւ Տար էլ–Աֆզալիյէ, և շէնքին գմբէթներուն համար՝ սովորաբար կո-

1. Իր շինածներէն մնացած է դեռ Ջուէյիլա կոչուած մեծ դուռն, քաղաքին հարաւ–արեւելեան կողմը:

2. Կերպով մի խալիֆայ ժամանակին երախտապարտ էր Շահնշահի. ասոր հայրն և Մոստանսիր խալիֆայն մէկ տարուան (1094) մէջ մեռան. Եգիպտացիք փոխանակ անոր Նիզար անդրանկան՝ երկրորդ որդին (Մոստալի պիլլահ) ընտրեցին. Աֆտաքին մեծ էմիրն ուզեց պաշտպանել զՆիզար. Շահնշահ դէմ ելաւ, յաղթեց, զերկուքն ալ բռնեց, և ապահովեց զՄոստալի:

չուէր Ցար էլ–Քուպար (Գմբեթաւոր[1] ապարանք), և աւելի յաճախ՝ Ցար էլ–Վէզիրաճ էլ Քուպրա. Շահնշահի ամենայն յաջորդ վզուրկք՝ մինչեւ ի բարձումն խալիֆայութեան և ի տիրապետութիւն Սալահատտին սուլդանի (1174), այս Նոր վզըրկարանի մէջ բընակեցան. Նոյն ինքն Սալահատտին այլ և իր առաջին չորս յաջորդք՝ մինչեւ ի շինութիւն Նոր արքունեաց. և այսոր համար վզըրկատունն այլ այն ատեն (1174–228) կոչուեցաւ Ցար էս Սուլդանիյէ. յետոյ Շահնշահի շքեղ շէնքն այլ իր հօր շինածին պէս՝ Դեսպանաց բնակարան կարգեցաւ, մինչև ի վերջ ԺԳ դարու. անկէ վերջը այլեւայլ իշխանազունք և պաշտօնեայք գնելով այդ ընդարձակ ապարանքը՝ իրենց ճաշակին համեմատ ձեւացուցին, մասն մասն քակեցին, նոր շէնքեր կանգնեցին. բայց մինչեւ ի ԺԵ դար այլ կ'երեւէին հին շէնքին մասեր. գուցէ դեռ շոշորդ մ'այլ նշմարուի:

Հիմակուան տեղագրութեամբ՝ այդ վզըրկարանին արեւմտեան կողմն է Պապ էն–Նասր

1. Միթէ այսպիսի վայելչութեա՞ն՝ եթէ բաղանեացն համար էր՝ որ Ատանայի մօտիկ տեղ մի Գմբեթաւոր կոչուէր, մեծին Լեւոնի օրերէն ինչուան իր յաջորդաց վերջն այլ: (Տ. Սիսուան, 64. 533. 541):

փողոցն. արեւելեան և հարաւային կողմն՝ Մապխյատա փողոցն. հիւսիսայինն՝ Ճուվվա-նիյէ: Շահնշահի դաստակերտն բոլոր քա-րաշէն էր և լաւ յղկած, այլեւայլ դատիկոն-ներ և յարկեր բաժնուած. բազմաթիւ սրահ-ներ և սենեակներ, պարտէզներ, բուրաս-տաններ, աւազաններ, և այլն, որոց ամե-նուն ջուր հասցընելու համար՝ 120 ագուգայք յարմարած էին: Ապարանից ամենէն նշա-նաւոր և թանկ մասն կամ տեղին՝ էր գան-ձարանն, (Խազինա), խալիֆայից գանձատան նման, աւելի կամ պակաս հարուստ. ուր Շահնշահ և յաջորդքն՝ ոչ միայն ոսկի և ար-ծաթ, գոհար և դիպակներ, այլ և պէսպէս չքնաղ արուեստագործ նիւթեր ամբարած էին. որոց գինն և գումարն՝ սովորական ո-ճով՝ բայց իրաւամբ կըրնայ ըսուիլ՝ անբաւ և անհամար. արդէն յիշած եմք (յ'երես 44) Շահնշահի սպանման ատեն՝ իր գանձատան մէջ գտուած միլիոնաւոր ոսկին: Այս չքնաղ և անգին նիւթոց ամենէն երեւելին կըրնամք ըսել՝ Շուպպաքը (الشبّاك). այսպէս կո-չուէր այն վանդակապատը՝ որ խալիֆայից ատենական դահլիճը կամ մեծ սենեակը՝ յերկու բաժնէր. մեծագոյն մասն կոչուէր Էլ—Բասա, ուր կենար ամէն ոք՝ որ տէրու-

թեան պետին պիտի ներկայանար. իսկ սա բազմէր միւս մասին մէջ՝ որ կոչուէր Էլ–Մաքսուրա: Պատմեն, թէ քանի որ այս սովորութիւնս չէր եղած՝ օր մի Իւմմիատաց նահապետ Մուավիէ խալիֆայն՝ Դամասկոսի մզկըթին մէջ սըրոյ հարուած մի ընդունելով, հնարեց այս միջարգել շուպպաքը. որ Պաղտատի Աբբասեան աշխարհակալ ամիրապետաց դահլըճին պատուարն եղաւ, և որոյ դիմաց պատկառանօք և վախով կենային Ասիոյ՝ (և երբեմն Եւրոպիոյ) ամեն պետութեանց դեսպանք և իւր յատուկ տէրութեան պաշտօնեայք. և ինքն ահարկու ամիրապետն (խալիֆայն) ներսը ի մաքսուրայն՝ բարձր գահու վրայ բազմած և ծածկուած, վճռական պատգամները կու հրամայէր: ԺԱ. դարու կիսուն մեծ շփոթութիւն և ապստամբութիւն մ'եղաւ ի Պաղտատ, և ամիրապետն (Էլ–Քայիմ) փախաւ. այն շփոթից ատեն ամբոխարարք կողոպտեցին արքունեաց կահն ու գանձը, և ղրկեցին Եգիպտոսի խալիֆայից. երբ Սալահատին տիրեց ասոնց գահուն, Պաղտատէն կողոպտուած թանկագին իրերն ալ դարձուց անոր ամիրապետին. ասոնց թուէն էր այդ երկդիմի բաղդի վարագոյր շուպպաքն ալ, երկաթէ դարբնած չատ ճար-

տար արուեստով վանդակն, հաւանօրէն՝ աւելի ազնիւ մետաղով օծուած և զարդարուած։ Կամ մեծութեանն համար, կամ իրեն յարմար համարելով Սալահատտին չշարժեց զայս տեղէն. իսկ տեղն էր չքեղաշուք Շահնշահի դահլիճն կամ ատեանն. ուր, նմանելով տիրապետ խալիֆայից, իր մեծութեան և իրեն դիմողներուն միջարաժին կանգներ էր այդ նշանաւոր շուպպաքը։ Երբ յետ ժամանակաց՝ Գարասնքոր էմիրն՝ Շահնշահի ապարանից գետնին վրայ շինեց իր հոյակապ շիրիմը, անոր մեծ պատուհանին վանդակ ըրաւ շուպպաքը կամ ատոր մէկ մասը. շիրիմն կանգուն կայ մինչեւ այսօր. բայց այն պատուհանն պատով հիւսուած է, և չի գիտցուիր թէ արդեօք հոն ծածկուած մնա՞յ այն խորհրդաւոր վանդակն, որ Շահնշահի ճոխութեանց գլխաւոր մէկն եղաւ։

Իրմէ վերջը իր գանձարանին մէջ պահուեցաւ պժգալի հաւաքում մ՚այլ. — Խազինաթ էր—ռուուս. այսինքն, գանձ (կտրած) գլխոց! երեւելի իշխանաւոր անձանց. որոց առաջինն եղաւ Ատիլ խյն—Սալար վզուրկն, յաջորդն Րոտովանի։ Ի կարգի պատմութեան Արուսահլի յիշուեցաւ այս եղքինիս գործը, և մեր Պահլաւունի Վարդանին նախ դիմա-

դրութիւնը, ապա յետ քաշուելն. Մաքրիզի՝ որ զսա Թագաւորաց Թագ կոչէ, Թաճ էլ Մուլուք, ասկէ առաջ և յետ Ապու Ալի Ահմէտի՝ Շահնշահի որդւոյն՝ (զոր և Քարիբար կոչէ), ուրիշ հայ վզուրկ մի եւս յիշէ, Եանիս Նասիր–էլ Ճիւյիւշ անուամբ, (1131+4 միջոց), որ զուցէ նոյնպէս Շահնշահի որդի մի էր, և նոյնպէս բռնամահ եղած է։ Ասոր յաջորդին յաջորդն էր գլխատեալն Ատիլ (1153). ասոր այլ յաջորդ Ապպաս իպն Ալի՛լ ֆութուհ, խռովութեան ժամանակ. զոր դադրեցուցեր է զօրաւոր Հայ մի, Ապու՛լ Ղարատ Թալայի կոչուած, և եօթն կամ ութ տարի (1154–61) նստեր է վզուրկ. բայց ինքն այլ սպանուեր է. սակայն յաջորդեր է իր որդին Ապու Շուճայ Ռուզզիք [1]. որ՝ չգիտեմ ինչպէս

[1]. Զսա և իր որդին՝ Զարեհ կամ Զաւրիկ անուանելով յիշած էինք ի Ն. Շնորհ. և Պարագայն իւր։ Թալայի՝ կրօնական հաճոյ գործ մի ըրած էր Եգիպտացոց. ասոնք դաւանութեամբ պարսկադեն իսլամ էին, այսինքն շիի. որոց, ինչպէս յայտնի է, մեծ պաշտպանք և պատուելիք են Ալի ամիրապետին նահատակ համարեալ որդիքն, Հասան և Հիւսէին. ետքինին գլուխն՝ երբ և է՝ յԱսկաղոն բերուած պահուէր. երբ խաչակիրք եկան այս կողմերը, Շահնշահ գալով յայս քաղաքս՝ այդ գլուխը նորէն զմբուռել տուաւ, և վրան մատուռ մի շինեց. բայց Եգիպտացիք միշտ կասկածէին

վախճանած է։ Մաքրիզի յիշէ ասոր կամ իր հօրը շինած գետնափոր տեղ մի՝ հանդերձ փականօք՝ վզըրկանոցին մէջ։ Սա յետին հայազգի վզուրկ եղած է՝ ի կարգի եօթանց՝ որք դար մի ժամանակի գրեթէ երեք մասին՝ այդ գերագոյն եգիպտական գահը բազմեր են, բաղդով կամ քաջութեամբ. օտարաց մէջ, օտարացեալք ի հայրենի հաւատոց, բաց ի Վահրամայ. մինչ ի նմին ժամանակի (ԺԲ դարու) իրենց գրաւած երկրին գրեթէ սահմանակից երկրի (Կիլիկիա) մի մէջ, հաւատարիմ ազգակիցք (Ռուբինեանք) Տօրոսի քարուտ կողերը մագըլցելով՝ ոտն առ ոտն առաջ անցան, իշխան կռուելով ու կորզելով և լեռ և դաշտ և ծով, և կանգնեցին իրենց տուն և տէրութիւն. և երկար տարիներ Սալահատինի յաջորդ քուրդ և մէմլուք սուլտանաց հետ գործակցութիւն ունեցան՝ բա-

թէ որ մի չանարգէն զայն քրիստոնեայք։ Հիմայ Թալայի յորդորէց զխալիֆայն, և ճարտարութեամբ վերցընել տուաւ յԱսկաղոնէ և բերել ի Գահիրէ (1153), ուր մզկիթ մ՚այլ շինեց (Ճամի Սալիհ) և հօն կ՚ուզէր դնել. բայց ժողովուրդն ստիպեց որ (Գուպպէթ Էտ-Տայլամ կոչուած) հասարակաց մզկըթին մէջ դրուի. որոյ գմբէթն այլ նորոգելով կոչեցին Մաշատ Հիւսէյինի. որ իբր դար մի վերջը՝ (1242) հրդեհով բոլորովին այրեցաւ։

րեկամաբար և թշնամաբար. որոց՝ վերջապէս նուաղած և նուաճուած՝ թողին իրենց ոսկիներով և ոսկորներով լի և դատարկ երկիրը. բայց թէ հօն և թէ դուրսը՝ թողին նա եւ մշտալուր և հեշտալուր համբաւ մի. մինչ այդ ընդվզեալ փղըրկաց անուանքն՝ հազիւ նշմարուին ի գիրս. և թէ քրքրեն զմիտս, ոչ գրգռեն զսիրտս. նա և տխրախառն զարմանք մ'ազդեն, երբ միաժամանակ և իբր ի միում թատեր, դէմ ընդ դէմ երեւին՝ այն Միջագետաց և Կիլիկիոյ Հայ իշխանք՝ ձեռնտուք, և այդ փղուրկքդ՝ հակառակողք Խաչակրաց: Պատմիչք և երգիչք յետնոցս՝ հարկ էր որ յիշէին անոնց անունը կամ գործնեւս: Պատմութեան այս ամենամեծ մէկ դիպուածին ատեն (Խաչակրաց Երուսաղեմի տիրելուն), Եգիպտոսի փղուրկ էր փղըրկաց գոռոզագոյնն՝ Շահնշահ, միանգամայն և զօրապետ և ամենապետ. հարկ էր՝ որ թէ ոչ անձամբ՝ երեսփոխանով մի ելնէր անոնց դէմ. և ահա այս նոր դիւցազանց զովասանից դասապետն՝ Տասսոյ, (որոյ՝ յանկարծ մահուանէ զրկած քերդողայաղթ պսակն՝ այս տարի (1895), փառաւորապէս տրուեցաւ ի յիշատակի իր 300ամեայ յոբելինին), իր դիւցազին (Կոփրետոսի) արժանաւոր դիմամարտ հաներ

է զՀայն Էմիրէն. որ՝ յետ ամենայն ջանից և քաջութեանց՝ խոցելով զմեծն այն Բուլյոն (Կոփրետ, il maggior Buglione), ինքնին կանչէ, «Ահա կու գամ քու ձեռքէդ մեռնելու».

Ecco, per le tue mani a morir vegno.

ինչ որ պատմիչ մեր (Մ. Խորեն.) փափագէր իւր հին դիւցազին (Զարմայրի) համար. «Կամիմ՝ յԱքիլլեայ, և մի՛ յայլ ումեքէ ի քաջացն»:... Աքիլլէս և Կոփրետ. Զարմայր և Էմիրէն. Տրոյա և Երուսաղէմ. Հոմեր և Դասսոյ! Ի՞նչ զարմանալի զուգաւորութիւնք պատմութեան և երևակայութեան!



# ՑԱՆԿ

## ԱՆՁԱՆՑ ԵՒ ՏԵՂԵԱՑ



